# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**2**

ՓԵՏՐՎԱՐ 1976

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«Ленинян угнов» («По ленинскому пути») — теоретичесский и политический журнал ЦК КП Армении**


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



## СОДЕРЖАНИЕ





# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԱՍԻՆ

Հունվարի 20—22-ը Երևանում, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նիստերի դահլիճում տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության հերթական XXVI համագումարը:

Պատգամավորների բուռն, երկարատև ծափահարությունների ներքո Հայաստանի կոմկուսի XXVI համագումարի պատվավոր նախագահություն է ընտրվում ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն՝ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի գլխավորությամբ:

Հաստատվում է Հայաստանի կոմկուսի XXVI համագումարի հետևյալ օրակարգը.

1. Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցումը Հայաստանի կոմունիստական կուսակցության XXVI համագումարին:

2. Հայաստանի կոմկուսի վերստուգիչ հանձնաժողովի հաշվետու զեկուցումը Հայաստանի կոմունիստական կուսակցության XXVI համագումարին:

3. Զեկուցում՝ «ՍՄԿԿ XXV համագումարին ներկայացվող «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագծի մասին:

4. Հայաստանի կոմունիստական կուսակցության ղեկավար մարմինների ընտրություններ:

5. ՍՄԿԿ XXV համագումարի պատգամավորների ընտրություն:

Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցմամբ հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԸ, որին ներկաները դիմավորեցին ջերմորեն:

Համագումարը լսեց Հայաստանի կոմկուսի վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվությունը, որով հանդես եկավ հանձնաժողովի նախագահ ընկ. Գ. Ս. ՓԱՀԼԵՎԱՆՅԱՆԸ:

Այնուհետև Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և վերստուգիչ հանձնաժողովի հաշվետու զեկուցումների շուրջը ծավալվեց մտքերի փոխանակություն:

Համագումարը հաշվետու ժամանակաշրջանում Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի աշխատանքը գնահատեց բավարար:

Համագումարը ՀԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման առթիվ միաձայն ընդունեց բանաձև, հաստատեց Հայաստանի կոմկուսի վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվությունը:

«ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագծի մասին» զեկուցմամբ հանդես եկավ Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի նախագահ ընկ. Գ. Ս. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆԸ:

«ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագծի մասին» զեկուցման վերաբերյալ համագումարն ընդունեց բանաձև, միահամուռ հավանություն տալով «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագծին:

Հայաստանի կոմկուսի XXVI համագումարի աշխատանքին մասնակցում էին ՍՍՀՄ ռադիոարդյունաբերության մինիստր ընկ. Պ. Ս. ՊԼԵՇԱԿՈՎԸ, ՍՄԿԿ Կենտկոմի կազմակերպական-կուսակցական բաժնի սեկտորի վարիչ ընկ. Ա. Ս. ՍԵՆՆԻԿՈՎԸ:

## ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

### ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

Հունվարի 22-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության XXVI համագումարում ընտրված Կենտրոնական կոմիտեի պլենումը:

Պլենումը Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընտրեց ընկ. Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻՆ:

Պլենումը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի երկրորդ քարտուղար ընտրեց ընկ. Պ. Պ. ԱՆԻՍԻՄՈՎԻՆ:

Պլենումը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղարներ ընտրեց ընկ. ընկ. Հ. Մ. ՈՍԿԱՆՅԱՆԻՆ, Վ. Բ. ՂԱԼՈՒՄՅԱՆԻՆ, Կ. Լ. ԴԱԼԼԱՔՅԱՆԻՆ:

Պլենումը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի անդամներ ընտրեց ընկ. ընկ. Պ. Պ. ԱՆԻՍԻՄՈՎԻՆ, Գ. Ա. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆԻՆ, Ռ. Ա. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆԻՆ, Կ. Լ. ԴԱԼԼԱՔՅԱՆԻՆ, Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻՆ, Վ. Բ. ՂԱԼՈՒՄՅԱՆԻՆ, Գ. Ա. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆԻՆ, Լ. Ն. ՆԵՐՍԻՍՅԱՆԻՆ, Հ. Մ. ՈՍԿԱՆՅԱՆԻՆ, Ս. Ի. ՊՈՍՏՆԻԿՈՎԻՆ, Բ. Ե. ՍԱՐԿԻՍՈՎԻՆ: Պլենումը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի անդամության թեկնածուներ ընտրեց ընկ. ընկ. Ե. Թ. ԱՍԾԱՏՐՅԱՆԻՆ, Մ. Բ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆԻՆ, Մ. Հ. ՄՈՒՐԱԴՅԱՆԻՆ, Լ. Գ. ՍԱՀԱԿՅԱՆԻՆ, Հ. Ս. ՔՈԹԱՆՋՅԱՆԻՆ:

Պլենումը Հայաստանի կոմկուսի Կենտկոմին առընթեր կուսակցական հանձնաժողովի նախագահ ընտրեց ընկ. Ս. Մ. ԽԱՉԱՏՐՅԱՆԻՆ:

Պլենումը հաստատեց ՀԿԿ Կենտկոմի բաժինների վարիչներ.

կազմակերպական-կուսակցական բաժնի վարիչ՝ ընկ. Մ. Բ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆԻՆ, կուլտուրայի բաժնի վարիչ՝ ընկ. Գ. Ա. ԱՌԱՔԵԼՅԱՆԻՆ, արդյունաբերության և տրանսպորտի բաժնի վարիչ՝ ընկ. Հ. Ս. ՍԱՂՈՅԱՆԻՆ, շինարարության և քաղաքային տնտեսության բաժնի վարիչ՝ ընկ. Ռ. Գ. ԳԵՎՈՐԳՅԱՆԻՆ, թեթև և սննդի արդյունաբերության բաժնի վարիչ՝ ընկ. Ս. Ս. ՊՅԱՏԿՈՎԱՅԻՆ, գյուղատնտեսության բաժնի վարիչ՝ ընկ. Վ. Մ. ՄՈՎՍԻՍՅԱՆԻՆ, վարչական մարմինների բաժնի վարիչ՝ ընկ. Մ. Մ. ԴԱՎԹՅԱՆԻՆ, առևտրի, պլանային և ֆինանսական մարմինների բաժնի վարիչ՝ ընկ. Հ. Ս. ԻԿԻԼԻԿՅԱՆԻՆ, ինֆորմացիայի և արտասահմանյան կապերի բաժնի վարիչ՝ ընկ. Լ. Պ. ՄԱՆԱՍԵՐՅԱՆԻՆ, ընդհանուր բաժնի վարիչ՝ ընկ. Ս. Ս. ՇԵԿՈՅԱՆԻՆ: ՀԿԿ Կենտկոմի գործերի կառավարիչ հաստատվեց ընկ. Հ. Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆԸ:

Պլենումը «Սովետական Հայաստան» թերթի խմբագիր հաստատեց ընկ. Լ. Մ. ԿՐՈՅԱՆԻՆ, «Կոմունիստ» թերթի խմբագիր՝ ընկ. Բ. Մ. ՄԿՐՏՉՅԱՆԻՆ, «Սովետ Էրմանիստանի» թերթի խմբագիր՝ ընկ. Մ. Բ. ԲԱՅՐԱՄՈՎԻՆ, «Ռյա Թազա» թերթի խմբագիր՝ ընկ. Մ. Ա. ՄՍՏՈՅԱՆԻՆ, «Լենինյան ուղիով» ամսագրի խմբագիր՝ ընկ. Ա. Գ. ԱԴՈՅԱՆԻՆ:



# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՀԱՇՎԵՏՎՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՌԱՋԻՆ ՔԱՐՏՈՒՂԱՐ ԸՆԿԵՐ Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ*

*Ընկերնե՛ր:*

*Մեր կուսակցությունն ու ժողովուրդը անխախտ միասնությամբ գնում են դեպի* ***ՍՄԿԿ XXV համագումարը:*** *Հետադարձ հայացք գցելով կուսակցության XXIV համագումարից հետո անցած ճանապարհին, յուրաքանչյուր կոմունիստ, մեր սոցիալիստական հայրենիքի յուրաքանչյուր քաղաքացի օրինական հպարտություն է զգում սովետական ժողովրդի աշխատանքային նոր սխրագործությունների համար, կոմունիստների լենինյան կուսակցության համար, որի քաղաքական և կազմակերպչական բեղմնավոր գործունեությունը նպաստակամղված է եղել ՍՄԿԿ XXIV համագումարի պատմական կանխագծումների իրականացմանը:*

*Մեր երկրի ակնառու նվաճումները, մեր սոցիալիստական հասարակարգի քաղաքական կայունությունն ու տնտեսական դինամիզմը, սովետական պետության արտաքին-քաղաքական հաստատուն դիրքը և միջազգային հեղինակությունը, մեր հիասքանչ իրականությունը՝ ահա թե ինչով է բնորոշվում XXIV համագումարից հետո անցած ժամանակաշրջանը:*

*Դա իններորդ հնգամյա պլանի իրականացման ժամանակաշրջանն էր, որը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման՝ կուսակցության սոցիալ-տնտեսական երկարաժամկետ, գիտականորեն հիմնավորված, կոմպլեքսային ծրագրի օրգանական մասը եղավ:*

*Երկրի ազգային եկամուտն աճեց 28 տոկոսով:*

*Անցած հինգ տարում նոր, բարձր բնագծեր նվաճեցին արդյունաբերությունը, գյուղատնտեսությունը, կապիտալ շինարարությունը, տրանսպորտը, կապը, երկրի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը:*

*Ընդգրկման լայնությամբ և հատկացված միջոցների չափերով իններորդ հնգամյակի սոցիալական ծրագիրը գերազանցում է նախորդ բոլոր հնգամյակներին: Իններորդ հնգամյակում ժողովրդի կենսամակարդակի բարձրացման նոր միջոցառումների վրա պետության կատարած ծախսերը 1,7 անգամ ավելի էին, քան ութերորդ հնգամյակում: Բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտները աճեցին գրեթե մեկ քառորդով: Ավելի քան մեկ երրորդով ավելացավ ապրանքաշրջանառության ծավալը: Է՛լ ավելի բուռն զարգացում ստացան գիտությունն ու կուլտուրան:*

---

* *Տպագրվում է կրճատումներով:*

«Գլխավորն այն է,— և այդ մասին համոզիչ կերպով վկայում է կյանքն ինքը,— որ իններորդ հնգամյակում տնտեսական զարգացման հիմնական ուղղություններն ու բնույթը լիովին համապատասխանում են ՍՄԿԿ XXIV համագումարի գծին, մեր տնտեսական քաղաքականության սկզբունքային դրույթներին։ Մենք լավ առաջընթաց քայլ արեցինք։ Եթե նկատի առնենք հանրային արտադրության բացարձակ աճի մասշտաբները, ապա իններորդ հնգամյակը լավագույն հնգամյակն էր մեր երկրի պատմության մեջ։ Մեր հայրենիքը է՛լ ավելի հարստացավ, է՛լ ավելի ուժեղացավ։ Սովետական մարդիկ սկսեցին ավելի լավ ապրել։ Իսկ դա կուսակցության գործունեության ամենաբարձր գնահատականն է»,— ամփոփված հնգամյակի արդյունքները այսպես բնութագրեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ Կենտկոմի 1975 թվականի դեկտեմբերյան պլենումում։

Դա կուսակցության և ժողովրդի կուռ միասնության, ՍՍՀՄ ժողովուրդների անխախտ բարեկամության հետագա ամրապնդման ժամանակաշրջանն էր։ Բարձրացավ սովետական մարդկանց գաղափարա-քաղաքական կոփվածությունը, նրանց աշխատանքային և քաղաքական ակտիվությունը։

ՍՄԿԿ XXIV համագումարից հետո անցած ժամանակաշրջանը նշանավորվեց կուսակցության գործունեության ստեղծագործական և նորարարական բնույթով, մեր կուսակցության լենինյան շտաբի՝ ՍՄԿԿ Կենտկոմի և նրա Քաղբյուրոյի բեղմնավոր ու կոնկրետ կազմակերպչական մեծ աշխատանքով։

Հիրավի, պատմական է ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՄԿԿ Կենտկոմի Քաղբյուրոյի և անձամբ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի ավանդը համագումարի մշակած ներքին ու արտաքին քաղաքականության կենսագործման ասպարեզում։ (Ծափահարություններ)։

ՍՄԿԿ Կենտկոմի հետհամագումարյան պլենումների որոշումներում, ՍՄԿԿ Կենտկոմի որոշումներում և մյուս կարևոր փաստաթղթերում վառ ու լիակատար կերպով դրսևորվել են սովետական հասարակության կյանքի տնտեսական, սոցիալ-քաղաքական և հոգևոր պրոցեսների կուսակցական ղեկավարման լենինյան ոճի գծերը։

Մեր կուսակցության շտաբի գործունեությունը արտաքին քաղաքականության բնագավառում բնութագրվում է դասակարգային բարձր սկզբունքայնությամբ, միջազգային իրադրության զարգացման մարքս-լենինյան խոր վերլուծությամբ և իսկական գիտական կանխատեսմամբ, արտաքին քաղաքական պրակտիկայի նկատմամբ ռեալիստական և ճկուն մոտեցմամբ։

Համագումարի ընդունած խաղաղության ծրագրի կենսագործումը հսկայական ազդեցություն թողեց միջազգային հարաբերությունների բովանդակության և բնույթի, դրանց ամբողջ սիստեմի վրա, դրական խոշոր փոփոխությունների հանգեցրեց համաշխարհային իրադրության մեջ։

ՍՄԿԿ Կենտկոմի բեղմնավոր գործունեությունը նպատակամղված է եղել մարքսիզմ-լենինիզմի սկզբունքային հիմքի վրա համաշխարհային կոմունիստական ու բանվորական շարժման շարքերի հետագա համախմբմանը, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի է՛լ ավելի ամրապնդմանը։

Կուսակցության XXIV համագումարի որոշումների հետևողական իրականացումը ապահովեց կոմունիզմի կառուցման ուղիով մեր հայրենիքի հետագա առաջընթացը, երկրում ստեղծեց իսկական ստեղծագործական իրադրություն, մասսաների աշխատանքային ակտիվության աննախընթաց վերելք։

Սովետական ժողովրդի քաղաքական և աշխատանքային ակտիվությանը նոր լիցք հաղորդեց ՍՄԿԿ Կենտկոմի 1975 թվականի դեկտեմբերյան պլենումը։

Պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևի արտասանած մեծ ու փայլուն ճառում համակողմանիորեն և խոր կերպով վերլուծվեցին իններորդ հնգամյակում մեր երկրի ժողովրդական տնտեսության զարգացման արդյունքները, ձևակերպվեցին կուսակցության սոցիալ-տնտեսական գործունեության խնդիրները։ Ընկեր Լ. Ի. Բրեժնևի ելույթի դրույթներն ու հետևությունները սկզբունքային նշանակություն ունեն կոմունիզմի նյութատեխնիկական բազայի հետագա կառուցման, սովետական հասարակարգի սոցիալ-տնտեսական զարգացման համար։



Ամբողջ կուսակցությունը, ողջ սովետական ժողովուրդը ջերմորեն ու միահամուռ կերպով հավանություն տվեցին ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի և ՍՍՀՄ Գերագույն սովետի սեսիայի որոշումներին։

Հաջողությամբ ավարտելով իններորդ հնգամյակը, սովետական ժողովուրդն իր հայացքը հառում է ապագային, մոբիլիզացնում իր ուժերն ու եռանդը պատմական նոր մեծագործությունների համար։ Կուսակցությունը նրան զինում է մոտակա հեռանկարի, ստեղծարար աշխատանքի նոր ծրագրով, կոմունիզմի ուղիով մեր երկրի հետագա առաջընթացի ծրագրով։

Այդ ծրագիրը շարադրված է ՍՄԿԿ XXV համագումարին ներկայացվող «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագծում։

ՍՄԿԿ Կենտկոմի նախագիծը մարմնավորում է կուսակցության լենինյան գլխավոր գիծը, նրա տնտեսական քաղաքականության սկզբունքային դիրքավորումները։ Դա մեր երկրի առաջընթացի ռեալիստական ծավալուն ծրագիրն է, որ ելնում է սովետական էկոնոմիկայի հետագա զարգացման ռեալ պահանջմունքներից, սոցիալ-կուլտուրական խնդիրների լուծումից։

Նախագիծը սահմանում է երկրի ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի զարգացման, սովետական ժողովրդի կենսամակարդակի բարձրացման, արտադրողական ուժերի տեղաբաշխման, միութենական հանրապետությունների տնտեսության զարգացման և Սովետական Միության արտաքին տնտեսական կապերի զարգացման ուղղություններն ու առաջադրանքները։

Տասներորդ հնգամյակը նոր կարևոր փուլ կլինի կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, հասարակական հարաբերությունների կատարելագործման և նոր մարդու ձևավորման, սոցիալիստական ապրելակերպի զարգացման ասպարեզում։ Դա կլինի հանրային արտադրության ինտենսիվացման, ազգային հարստության բազմապատկման համար ժողովրդական տնտեսության հնարավորություններն ավելի լրիվ օգտագործելու, երկրի տնտեսական հզորությունն ու պաշտպանունակությունը ավելի ամրապնդելու ժամանակաշրջան։

«Տասներորդ հնգամյակի գլխավոր խնդիրն է,— ընդգծված է կուսակցության համագումարին ներկայացվող ՍՄԿԿ Կենտկոմի նախագծում,— հետևողականորեն իրականացնել ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացման կոմունիստական կուսակցության կուրսը՝ հանրային արտադրության դինամիկ ու համամասնական զարգացման և նրա արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջադիմության արագացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում աշխատանքի որակի ըստ ամենայնի բարձրացման հիման վրա»։

Հետևելով լենինյան ավանդույթներին, մեր կուսակցությունը խորհրդակցում է ժողովրդի հետ։ Ահա արդեն ավելի քան մեկ ամիս է, ինչ կուսակցական բոլոր կազմակերպություններում, աշխատավորական կոլեկտիվներում, մամուլում տեղի է ունենում պատմական այդ կարևոր փաստաթղթի ակտիվ, համակողմանի քննարկում։ Սովետական մարդիկ, այդ թվում նաև մեր հանրապետության աշխատավորները, պաշտպանում են նախագծի բոլոր դրույթները, հանդես են գալիս նոր խնդիրների իրականացումն ապահովող կոնկրետ առաջարկություններով։

Նախագիծը մոբիլիզացնող հսկայական ուժ ունեցող փաստաթուղթ է։ Այդ նշանավոր փաստաթղթի քննարկումն ուղեկցվում է սոցիալիստական մրցության հետագա վերելքով, արտադրության արդյունավետության բարձրացման, արտադրանքի և ամբողջ աշխատանքի որակի բարելավման, նոր ռեզերվների հայտնաբերման և օգտագործման ասպարեզում աշխատանքային կոլեկտիվների ստեղծագործական ակտիվության աճով։

Սովետական մարդիկ ջերմորեն հավանություն են տալիս և միահամուռ պաշտպանում մեր կուսակցության լենինյան կուրսը և պայծառ լավատեսությամբ ու վստահությամբ ընթանում են առաջ։ (Ծափահարություններ)։

Ստեղծարար աշխատանքի, միասնության, կուսակցության շուրջը է՛լ

կան-արդյունաբերական գործարանը Երևանում, Իջևանի «Բենտոնիտ» կոմբինատը, Չարենցավանի լիգինի արտադրության գործարանը, Աբովյանի բիոքիմիական պատրաստուկների գործարանը, Շինուհայրի ռետինե կոշկեղենի գործարանը, Կիրովականի և Հոկտեմբերյանի կահույքի ֆաբրիկաները, կաշվի-գալանտերեայի ֆաբրիկան, կաշեհումքի, «Արզնի» հանքային ջրերի, Նաիրիտ քարամշակման գործարանները, հացի մի քանի գործարաններ ու պահածոների գործարաններ և այլն։

Իրագործվել է մի շարք գործարանների ու ֆաբրիկաների վերակառուցումը, ընդլայնումն ու տեխնիկական վերազինումը։ Գործարկվել են ցածրավոլտ ապարատների, ուժային տրանսֆորմատորների, էլեկտրաշարժիչների, ավտոմոբիլների, կենտրոնախույս պոմպերի, վերելակների, քիմիական նյութերի, թեթև ու սննդի արդյունաբերության սարքերի արտադրության, գունավոր մետաղների, հանքաքարի հանույթի ու վերամշակման, շինանյութերի և շինարարական կոնստրուկցիաների արտադրության և այլ լրացուցիչ կարողություններ։

Արդյունաբերության մեջ հիմնական արտադրական ֆոնդերն աճել են 1,6 անգամ։ Աճել է արդյունաբերության մեջ զբաղված բանվորների, ինժեներատեխնիկական աշխատողների և ծառայողների թիվը։ Ներկայումս արդյունաբերության մեջ զբաղված են մոտ 260 հազար բանվոր և ավելի քան 36 հազար ինժեներ ու տեխնիկ։

Հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները, կենսագործելով կուսակցության XXIV համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների որոշումները և առաջնորդվելով երկրի տնտեսական զարգացման հարցերի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի ցուցումներով, լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցությունը, ապահովեցին իններորդ հնգամյակի բոլոր տարիների սահմանված պլանների կատարումը։ Հինգ տարում պլանի տարեկան առաջադրանքների գումարից դուրս իրացվել է ավելի քան 330 միլիոն ռուբլու արդյունաբերական արտադրանք։ Ամբողջությամբ վերցրած, հնգամյակի ընթացքում արդյունաբերական արտադրության ծավալն ավելացել է 45 տոկոսով։ Աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 27 տոկոսով։

Հնգամյակի պլանային առաջադրանքները հաջողությամբ են կատարել էլեկտրոնային, կապի միջոցների արտադրության, բուժական, մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության ձեռնարկությունները։ Ձեռք է բերվել կարևորագույն շատ արտադրատեսակների արտադրության՝ հնգամյակի վերջին տարվա համար սահմանված մակարդակը։ Հանրապետության ձեռնարկությունների և միավորումների մեծամասնությունը ժամկետից շուտ ավարտեցին հնգամյակի առաջադրանքների կատարումը։ Դրանց թվում են՝ «Հայէլեկտրալույս» միավորումը, «Էլեկտրոն» գործարանը, Քանաքեռի ալյումինի, Երևանի արհեստական ալմաստների և ալմաստե գործիքների, Չարենցավանի գործիքաշինական և «Ցենտրոլիտ», Դիլիջանի «Իմպուլս», Կիրովականի գերճշգրիտ հաստոցների, Լենինականի գարբնա-մամլակային սարքավորումների գործարանները, Երևանի «Գարուն» կարի արտադրական միավորումը, Լենինականի Չկալովի անվան կարի ֆաբրիկան, Իջևանի գորգագործական կոմբինատը, Երևանի կոնյակի գործարանը և այլ ձեռնարկություններ։

Հանրապետությունը կատարել ու գերակատարել է արդյունաբերական արտադրանքի մի շարք կարևորագույն տեսակների թողարկման պլանները։

Արագ տեմպերով են զարգացել մեքենաշինությունը, էլեկտրաէներգետիկան, անտառային և փայտամշակման արդյունաբերությունը, համակցված կերի արդյունաբերությունը և այլ ճյուղեր։ Հետագա զարգացում ստացան գունավոր մետալուրգիան, թեթև ու սննդի արդյունաբերությունը, շինանյութերի արդյունաբերությունը, քիմիան և այլն։

Ինչպես և նախատեսվում էր հնգամյա պլանով, ապահովվեց սպառման առարկաների՝ «Բ» խմբի արտադրանքի արտադրության ավելի արագ զարգացումը, որի աճի տեմպերը հինգ կետով գերազանցեց «Ա» խմբի աճի տեմպերին։



Որոշ աշխատանք է կատարվել նոր տեխնիկայի արմատավորման, արտադրանքի նոր տեսակների յուրացման և որակի բարձրացման ասպարեզում։ Հինգ տարում հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ ներդրվել են նոր տեխնիկայի ավելի քան 2.400 կարևորագույն միջոցառումներ։ Այդ միջոցառումների ներդրման շնորհիվ արդյունաբերության մեջ որոշ չափով բարձրացել է մեքենայացված աշխատանքի մակարդակը։

Զգալի հաջողությունների են հասել այն արդյունաբերական ձեռնարկությունները ու կազմակերպությունները, որտեղ նոր տեխնիկայի արմատավորման հարցերի լուծմանը մոտեցել են կոմպլեքս կերպով և որոշակի սիստեմով։

«Հայէլեկտրալույս» միավորումը, օրինակ, նոր տեխնիկայի ներդրման կոմպլեքսային պլանի իրականացման շնորհիվ պետական որականիշի արժանացած արտադրանքի թողարկումը հասցրել է 52 տոկոսի։ Այստեղ հիմնական արտադրության մեքենայացման ու ավտոմատացման աստիճանն աճել և 30-ից հասել է 50 տոկոսի, իսկ էլեկտրալամպերի արտադրության գծով՝ 70-ից 82,3 տոկոսի։

Հանրապետության ձեռնարկություններում յուրացվել են ավելի քան 300 նոր արտադրատեսակներ, այդ թվում՝ էլեկտրաշարժիչներ, գեներատորներ և տրանսֆորմատորներ, էլեկտրական խոշոր մեքենաներ, սարքեր, մետաղահատ հաստոցներ, այդ թվում՝ ծրագրային կառավարմամբ, ավտոմատացման և հաշվողական տեխնիկայի միջոցներ, ռադիոէլեկտրոնային առարկաներ, բարձր ինտենսիվության լույսի աղբյուրներ, կահույքի կոմպլեկտներ, երաժշտական գործիքներ, թեթև, սննդի, մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության առարկաներ և այլ արտադրատեսակներ։

Կուլտուր-կենցաղային և տնտեսական գործածության ապրանքների թողարկումը մեքենաշինական ձեռնարկություններում աճել է 1,9 անգամ։ Ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ասպարեզում դրական տեղաշարժեր կան նաև տեղական արդյունաբերության մեջ։

Զգալի աշխատանք է կատարվել թողարկվող արդյունաբերական արտադրանքը պետական որականիշի համար ատեստավորելու ուղղությամբ։ Այժմ հանրապետության արդյունաբերությունը թողարկում է պետական որականիշ ունեցող մոտ 500 արտադրատեսակ։ Այս գործում շոշափելի հաջողությունների են հասել էլեկտրատեխնիկական, թեթև արդյունաբերության և մյուս ճյուղերի ձեռնարկությունները։ Արտադրանքի նոր տեսակների յուրացումը, դրանց տեխնիկական մակարդակի, որակի և հուսալիության բարձրացումը հնարավորություն ընձեռեցին ավելացնելու էքսպորտային մատակարարումները։

Միջոցառումներ են իրականացվում արդյունաբերական արտադրության համակենտրոնացման և կառավարման կատարելագործման ուղղությամբ։ Հանրապետությունում ստեղծվել են 32 արտադրական, գիտաարտադրական և արտադրատեխնիկական միավորումներ, որոնք թողարկում են հանրապետության արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալի մոտ 26,6 տոկոսը։ Աշխատանք է կատարվել արտադրողական ուժերի առավել ռացիոնալ տեղաբաշխման ուղղությամբ։

Ընդհանուր գծերով սրանք են դրական արդյունքները, որ մենք ձեռք ենք բերել անցած հնգամյակում արդյունաբերության բնագավառում։

Մեր հաջողությունները անվիճելի են, ընկերներ։

Չէ՞ որ իններորդ հնգամյակում հանրապետության արդյունաբերական արտադրության ծավալի բացարձակ աճը ամենաբարձրն է, որի հավասարը մենք չենք ունեցել որևէ այլ հնգամյակում։ Չէ՞ որ իններորդ հնգամյակում աճի մեկ տոկոսի արժեքը ութերորդ հնգամյակի նույն ցուցանիշից բարձր է 1,8 անգամ։

Ընկերնե՛ր։ Կուսակցությունը սովորեցնում է քննադատաբար վերլուծել ինչպես ձեռք բերած արդյունքները, այնպես էլ եղած թերությունները։

Մեր հանրապետության արդյունաբերական արտադրության բնագավառում ձեռք բերած արդյունքների գնահատման չափանիշները պետք է լինեն արդի փուլում կուսակցության տնտեսական քաղաքականության պահանջնե-

րից, որոնք պարզ ու հստակ շարադրված են ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներում, ՍՄԿԿ Կենտկոմի հետագա որոշումներում և ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի ելույթներում, հատկապես ՍՄԿԿ Կենտկոմի 1975 թվականի դեկտեմբերյան պլենումում ունեցած ելույթում։

Մեր նվաճումները և գործերի վիճակը արդյունաբերության մեջ մենք պետք է գնահատենք, ելնելով հենց այս պահանջներից։ Հանրապետության արդյունաբերական արտադրության զարգացման բնագավառում մեր գործունեության արդյունքները պետք է գնահատենք այն առումով, թե որքանով ենք կարողացել կատարել մեր առջև դրված խնդիրները, որքանով լրիվ ու արդյունավետ ենք օգտագործել մեզ հատկացված ֆինանսական, նյութական և տեխնիկական միջոցները՝ իններորդ հնգամյա պլանով նախատեսված նպատակներին հասնելու համար։ Արդյոք այդ նվաճումները համապատասխանո՞ւմ են մեր ունեցած հնարավորություններին, արդյունաբերական և մտավոր պոտենցիալին։

Եթե այդ տեսանկյունից նայելու լինենք հաշվետու ժամանակաշրջանում հանրապետության արդյունաբերության աշխատանքի արդյունքներին, ապա պետք է ուղղակի ասել, որ հնարավորություններ ունեինք հասնելու ավելի բարձր արդյունքների, քան այն, որ ձեռք ենք բերել, որ արդյունաբերական արտադրության արդյունավետությունը դեռևս ոչ լիովին է համապատասխանում կուսակցության XXIV համագումարի պահանջներին, որ մենք ամբողջովին չենք օգտագործել մեր տնտեսական ու քաղաքական հնարավորությունները նախատեսված բոլոր խնդիրները լուծելու համար և որ արդյունաբերական արտադրության բնագավառում առկա են չլուծված շատ պրոբլեմներ, առանձին լուրջ թերություններ ու վրիպումներ, որոնք խանգարում են նրա ինտենսիվ աճին, որակական ցուցանիշների բարելավմանը։

Բավական է ասել, որ հանրապետության արդյունաբերության առանձին ճյուղեր չեն ապահովել հնգամյա պլանի առաջադրանքների կատարումը։ Նոր կարողությունների գործարկումը ժամանակին չապահովելու և դրանք ոչ լրիվ օգտագործելու պատճառով թերակատարված է մի շարք կարևորագույն արտադրատեսակների թողարկման պլանը։

Ավելացել է չտեղակայված սարքավորումների, այդ թվում նաև արտասահմանից ներմուծված սարքավորումների քանակը։ Առանձին ճյուղերում նվազել է արդյունաբերական արտադրության ֆոնդահատույցը։ Ոչ լրիվ են լուծվել արդյունաբերական կոմպլեքսների զարգացման, արտադրության կառուցվածքի ու կառավարման բարելավման պրոբլեմները։

Այդ պրոբլեմների ու թերությունների և դրանց լուծման ու հաղթահարման ուղիների մասին հանգամանորեն խոսվեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հունվարյան և հուլիսյան պլենումներում։

Ներկայումս հանրապետության կուսակցական կազմակերպությունը, սովետական-տնտեսական մարմինները և արդյունաբերական ձեռնարկությունների ու կազմակերպությունների կոլեկտիվները հետևողական աշխատանք են կատարում արդյունաբերական արտադրության բոլոր օղակներում գործերի վիճակը բարելավելու ուղղությամբ։ Շատ պրոբլեմների լուծմանը և թերությունների վերացմանը մեծապես կօգնի «Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի ընդունած որոշման իրագործումը, որը դարձել է մեր գործունեության կոնկրետ ծրագիր։

Սակայն, օրինաչափ և նպատակահարմար կլիներ այսօր համագումարի և կուսակցական կազմակերպության ուշադրությունը բևեռել մի շարք արմատական պրոբլեմների և լուրջ թերությունների վրա, որոնց լուծումն ու վերացումը պետք է դառնա մոտակա ժամանակաշրջանի մեր առաջնահերթ խնդիրը։

Դա, նախ և առաջ, կուսակցական, պետական և պլանային կարգապահության համակողմանի ամրապնդումն ու բարձրացումն է արդյունաբերական արտադրության բոլոր օղակներում։

Բավական է ասել, որ հնգամյակի ընթացքում, ամեն տարի, հանրապե-



տության ձեռնարկությունների, միջին հաշվով, 9—14 տոկոսը չի ապահովել արդյունաբերական արտադրանքի արտադրության և իրացման պլանների կատարումը։ Դրա հետևանքով հանրապետության արդյունաբերությունը ոչ լրիվ ծավալով է ապահովել երկրի մյուս տնտեսական շրջանների համար արդյունաբերական արտադրանքի մի շարք կարևորագույն տեսակների կոոպերատիվ մատակարարումների հնգամյա պլանների կատարումը։ Ամեն տարի ձեռնարկությունների, միջին հաշվով, 20—23 տոկոսը չի կատարել աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանները։

Մեզանում դեռևս քիչ չեն այն ղեկավարները, իրենց համար հեշտ կյանք ապահովելու և առաջավորների շարքերում քայլելու սիրահարները, որոնք, գործադրելով բոլոր ջանքերը, հասնում են նվազ, ոչ լարված պլանային առաջադրանքների հաստատմանը։ Նրանք ոչ միայն չեն մոբիլիզացնում կոլեկտիվներին նոր բնագծեր նվաճելու համար, այլ, ընդհակառակն, փչում են նվաճած դիրքերը։ Միայն 1975 թվականին 209 ձեռնարկություն ունեին 1974 թվականի փաստացի կատարողականից ցածր պլաններ։ Իններորդ հնգամյակի բոլոր տարիներին տեղ են գտել պլանային ցուցանիշների նվազեցման ուղղությամբ անհիմն ճշգրտումների՝ կուսակցության կողմից խստորեն դատապարտված դեպքեր։ Այդ հանգամանքը, ստեղծելով բարեհաջողության պատրանք, մեծ չափով թուլացնում էր կոլեկտիվների ջանքերը պլանային առաջադրանքների կատարման ասպարեզում։

Այս տեսակետից յուրահատուկ ռեկորդ սահմանեց «Պոլիվինիլացետատ» գործարանը (դիրեկտոր՝ ընկ. Գ. Ազարյան, կուսկազմակերպության նախկին քարտուղար՝ Ռ. Խաչատրյան), որտեղ 1973—74 թվականների ընթացքում բազմիցս ճշգրտվել են արտադրության և իրացման պլանները՝ նվազեցման ուղղությամբ։ Գործարանի ղեկավարությունը անհրաժեշտ հետևություններ չարեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1975 թվականի հունվարյան պլենումում եղած սուր քննադատությունից, ճշգրտման վերջին ակորդը տալով 1975 թվականի հենց վերջերին՝ տարեկան պլանի 7,5 տոկոսի չափով։

Ցավոք, նման օրինակները մեզ մոտ եզակի չեն։ Իսկ որոշ մինիստրություններ ու գերատեսչություններ, կուսակցական կոմիտեներ հանդուրժում են նման դրությունը։

Գլխավոր և կարևոր հետևությունը, որ մենք պետք է անենք իններորդ հնգամյակում կատարած աշխատանքի փորձից, այն է, որ եթե ուզում ենք հաստատուն կերպով և լիովին կատարել տասներորդ հնգամյա պլանի առաջադրանքները արդյունաբերական արտադրության հետագա զարգացման բնագավառում, իսկ դա մենք պարտավոր ենք անել, ապա մեր առաջին, անհետաձգելի խնդիրը պետք է լինի ամենուրեք, ըստ ամենայնի, ամրապնդել պետական պլանային կարգապահությունը։

Համագումարն այսօր արդյունաբերության մեջ աշխատող բոլոր ձեռնարկությունների կուսակցական կազմակերպություններից և կոլեկտիվներից, նրանց ղեկավարներից, մինիստրություններից ու գերատեսչություններից, կուսակցության շրջանային և քաղաքային կոմիտեներից, հանրապետության սովետական ու պետական բոլոր մարմիններից պետք է պահանջի խստորեն ամրապնդել պլանային կարգապահությունը, ապահովել արդյունաբերական արտադրության տասներորդ հնգամյա պլանով սահմանված ամսական, եռամսյակային և տարեկան պլանների անվերապահ կատարումն ու գերակատարումը յուրաքանչյուր ձեռնարկության ու կազմակերպության կողմից։

Արդյունաբերության աշխատանքում արմատական պրոբլեմ է աշխատանքի արտադրողականության բարձրացումը։ Աշխատանքի արտադրողականության աճը ներկայումս արտադրության զարգացման տեմպերի արագացման, նրա համակողմանի ինտենսիվացման և արդյունավետության բարձրացման գլխավոր ու կարևորագույն պայմաններից մեկն է։

Սակայն, հանրապետության արդյունաբերության շատ ճյուղերում չեն կատարվել աշխատանքի արտադրողականության աճի՝ հնգամյա պլանով նախատեսված առաջադրանքները։

Ամեն տարի, միջին հաշվով, յուրաքանչյուր հինգ ձեռնարկությունից

մեկը չէր կատարում աշխատանքի արտադրողականության բարձրացման ա-
ռաջադրանքը, կամ թույլ էր տալիս աշխատանքի արտադրողականության աճի
նվազում, նախորդ տարվա համեմատությամբ: 1975 թվականին դրությունը
որոշ չափով շտկվեց, սակայն դեռևս ամենևին բավարար չէ:

Գլխավոր թերությունը պետք է համարել առանձին մինիստրությունների,
գերատեսչությունների և արդյունաբերական ձեռնարկությունների անբավա-
րար աշխատանքը գիտատեխնիկական առաջադիմությունն արագացնելու և
աշխատանքի ու արտադրության կազմակերպումը կատարելագործելու հիման
վրա աշխատանքի արտադրողականության պլանաչափ բարձրացման ուղղու-
թյամբ: Թուլացել է շատ կուսակցական կազմակերպությունների, պլանային
ու տնտեսական մարմինների ուշադրությունը այդ կարևոր հարցի նկատմամբ:

Խնդիրն այն է, որ յուրաքանչյուր ձեռնարկության աշխատանքի արտա-
դրողականության բարձրացման պլանը՝ այն կազմելու պահից մինչև կատա-
րումը, գտնվի արդյունաբերական ձեռնարկությունների կուսակցական կազ-
մակերպությունների, մինիստրությունների և գերատեսչությունների, կուսակ-
ցության շրջկոմների և քաղկոմների, հանրապետության պլանային, տնտե-
սական և սովետական բոլոր մարմինների ուշադրության կենտրոնում:

Այդ պլանները պետք է լինեն լարված, բայց ռեալ, և դրանց կատարումը
հարկավոր է ամրապնդել արդյունաբերական ձեռնարկությունների կուսակ-
ցական կազմակերպությունների և նրանց բոլոր ծառայությունների ղեկավար-
ների ու մասնագետների կազմակերպչական և քաղաքական մեծ աշխա-
տանքով:

Աշխատանքի արտադրողականության և արտադրության արդյունավետու-
թյան, թողարկվող արտադրանքի որակի բարձրացումը՝ արդյունաբերության
աշխատանքի այդ գլխավոր ցուցանիշների բոլոր ամենալնի բարելավումը ան-
հնար է ապահովել, եթե արդյունաբերական արտադրությունը չբարձրացվի
որակապես նոր մակարդակի՝ գիտատեխնիկական նվաճումների արմատավո-
րումը արագացնելու, արտադրության տեխնոլոգիան ու կազմակերպումը
ամեն կերպ կատարելագործելու, աշխատանքի գիտական կազմակերպումն
արմատավորելու միջոցով:

Սակայն այդ գործում թույլ են տրվել լուրջ թերություններ:

Ամբողջությամբ վերցրած, հնգամյակի ընթացքում արդյունաբերության
մեջ նոր տեխնիկայի արմատավորման պլանը կատարվել է 90,4 տոկոսով:
Միանգամայն բացասական երևույթ պետք է համարել, երբ նոր տեխնիկայի
գծով միջոցառումները պլանավորվում և իրականացվում են անջատ-անջատ,
առանց տեխնոլոգիական և կազմակերպական օրգանական փոխադարձ կապի
և չեն ենթարկվում տվյալ փուլում միասնական նպատակի իրականացմանը,
երբ կոմպլեքսայնորեն չեն լուծվում ձեռնարկության, ճյուղի առջև կանգնած
սուր պրոբլեմները: Ցաք ու ցրիվ միջոցառումների մեխանիկական կուտակու-
մը փոշիացնում է նոր տեխնիկայի ներդրման համար հատկացված միջոցները
և չի ապահովում գլխավորը՝ արտադրության ինտենսիվության և արդյունա-
վետության բարձրացումը: Դա կարելի է ցույց տալ մեքենաշինության, թեթև,
սննդի, մսեղենի-կաթնեղենի, շինանյութերի արդյունաբերության և այլ ճյու-
ղերի շատ ձեռնարկությունների օրինակով, որտեղ ներդրված առանձին բարձր
արտադրողական կայանքներն ու ագրեգատները լրիվ կարողությամբ չեն աշ-
խատում, քանի որ կոմպլեքսայնորեն չեն լուծվել ամբողջ տեխնոլոգիական գծի
և նրա հետ կապված արտադրական պրոցեսների աշխատանքի արտադրողա-
կանության բարձրացման հարցերը:

Անհրաժեշտ է առանձին բարձր արտադրողական մեքենաների ու տեխնո-
լոգիական պրոցեսների ստեղծումից և արմատավորումից հետևողականորեն
անցում կատարել դեպի արտադրության բոլոր պրոցեսների և հատկապես օ-
ժանդակ, տրանսպորտային ու պահեստային գործողությունների մեքենայա-
ցումն ու ավտոմատացումն ապահովող մեքենաների, սարքավորումների,
սարքերի ու տեխնոլոգիական պրոցեսների արդյունավետ սիստեմների ներ-
դրումն ու կիրառումը: Իսկ դա հնարավոր է իրագործել միայն նոր տեխնիկայի



արմատավորմանը նպատակաուղղված կոմպլեքսային պլանների մշակման և
դրանց անշեղ իրականացման ճանապարհով:

Հանրապետության արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողա-
կանության արագ աճի վրա բացասաբար ազդող գործոններից մեկը արտա-
դրության մեջ ձեռքի աշխատանքի նշանակալի տեսակարար կշիռն է: Այդ
հանգամանքը գլխավորապես բացատրվում է հիմնական պրոցեսների ու աշ-
խատանքի մեքենայացման՝ ձեռք բերված համեմատաբար բարձր մակարդա-
կի և օժանդակ պրոցեսների աշխատանքների մեքենայացման ցածր մակար-
դակի միջև եղած մեծ խզմամբ:

Սննդի արդյունաբերության մինիստրության կողմից (մինիստր ընկ. Ս.
Առաքելյան) արդեն մի քանի տարի է, ինչ չի կատարվում պետական ժողովր-
դատնտեսական պլանը մի այնպիսի արդյունավետ միջոցառման գծով, ինչ-
պիսին է հացի գործարաններում առանց տարաների ալյուրի ընդունման,
պահպանման և ներգործարանային փոխադրումների մեքենայացումը, որը
մեծ չափով կկրճատեր այդ ծանր և աշխատատար պրոցեսներում զբաղված
օժանդակ բանվորների թիվը:

Հանրապետության պետպլանը, մինիստրություններն ու գերատեսչու-
թյունները պետք է ամենաանհետաձգելի միջոցներ ձեռնարկեն այն հաշվով,
որպեսզի հասնեն օժանդակ աշխատանքներում աշխատանքի արտադրողակա-
նության խիստ բարձրացմանը, նրա կոմպլեքսային մեքենայացման և ավտո-
մատացման հիման վրա:

Ընկերնե՛ր: Քաղաքական ու կազմակերպչական աշխատանքը արդյունա-
բերության մեջ մենք պետք է ուղղենք այն բանին, որ յուրաքանչյուր աշխա-
տող, յուրաքանչյուր աշխատանքային կոլեկտիվ հաստատակամորեն պայքա-
րի նվազագույն ծախսումներով առավելագույն արդյունքներ ձեռք բերելու,
արտադրության ունեցած ռեզերվներն ի հայտ բերելու և առավել լրիվ օգտա-
գործելու, տնտեսման խստագույն ռեժիմ սահմանելու համար: Իսկ չօգտա-
գործված ռեզերվները և հնարավորությունները մեզանում շատ շատ են:

Դեռևս ցածր է հերթափոխայնության գործակիցը մեքենաշինության
ձեռնարկություններում: Մետաղահատ սարքավորումների ժամանակի ռեժի-
մային ֆոնդը թերօգտագործվում է մոտավորապես 30—35 տոկոսով: Մետա-
ղամշկման սարքավորումների համակազմը օգտագործվում է 85 տոկոսի
չափով: Մենք պետք է ամենամոտ ժամանակներս մեքենաշինության մեջ
բարձրացնենք ինչպես հերթափոխայնության գործակիցը, այնպես էլ մետա-
ղամշակման սարքավորումների օգտագործման գործակիցը: Շատ ձեռնար-
կություններում արտադրական կարողությունները օգտագործվում են 70—80
տոկոսի մակարդակով:

Արդյունաբերական ձեռնարկությունները աշխատաժամանակի մեծ կո-
րուստներ են կրում անհամաչափ աշխատանքի և գրոհայնության պատճա-
ռով: Դեռևս մեծ են ամբողջօրյա և ներհերթափոխային պարապուրդները,
րոնք առանձին դեպքերում հասնում են ընդհանուր աշխատաժամանակի 10—
15 տոկոսին:

Նյութական և էներգետիկ ռեսուրսների օգտագործման նկատմամբ ան-
տնտեսվար և ոչ խնայողական վերաբերմունքի հետևանքով մենք յուրաքան-
չյուր տարի կորցնում ենք հարյուրավոր տոննա մետաղ, միլիոնավոր կիլո-
վատ-ժամ էլեկտրաէներգիա, մեծ քանակությամբ տարբեր տեսակների հումք
և վառելիք:

Մենք պետք է լավ խորհենք այս թվերի մասին, ընկերներ, չէ՞ որ դա ժո-
ղովրդական բարիք է, դա հսկայական ռեզերվ է, որը մենք չենք օգտագործում
մեր անկազմակերպվածության և անկարգապահության պատճառով, տնտե-
սությունը օրվա պահանջների մակարդակով վարել չկարողանալու պատ-
ճառով:

Վերացնել վերոհիշյալ թերությունները, բարձրացնել աշխատանքային
և արտադրական կարգապահությունը, օգտագործել արտադրության բոլոր ռե-
զերվները, վերջ տալ անտնտեսվարությանը և թափթփվածությանը՝ սա ձեռ-

նարկությունների ղեկավարների և կուսակցական կազմակերպությունների կարևորագույն խնդիրը:

Անհրաժեշտ է հասնել այն բանին, որ աշխատանքային օրվա յուրաքանչյուր ժամը օգտագործվի բեղմնավոր կերպով և առավելագույն արդյունավետությամբ, որպեսզի եղած հաստոցները, մեխանիզմները, սարքավորումները շահագործվեն լրիվ բեռնվածությամբ, իրենց առավելագույն հնարավորությունների մակարդակով, որպեսզի խնայողաբար և ռացիոնալ կերպով օգտագործվեն հումքը, նյութերը, վառելանյութի և էներգետիկ ռեսուրսները: Միայն այդ դեպքում մեզ կհաջողվի հասնել արտադրության ինտենսիվացման և դրա արդյունավետության իսկական բարձրացման: Դրա համար անհրաժեշտ է ըստ ամենայնի ամրապնդել աշխատանքային կարգապահությունը, բարձրացնել աշխատանքի կազմակերպման մակարդակը, դրա արդյունավետությունը, ամբողջ աշխատանքի որակը:

Արդյունաբերության բնագավառում մեր գործունեության հիմնական ուղղություններից մեկը պետք է լինի արտադրության տեխնիկական մակարդակի համակողմանի բարձրացումը: Արդի պահանջներին չհամապատասխանող մակարդակով արտադրությունների կոմպլեքսային վերակառուցումն ու տեխնիկական վերազինումը այդ նպատակի իրականացման հիմնական ուղին է:

Ընկերնե՛ր: Մենք պետք է խորապես գիտակցենք, որ քանակը իմաստ ունի միայն այն դեպքում, երբ այն զուգակցված է լավ որակի հետ: Ուստի, արդյունաբերության բոլոր աշխատողների, ձեռնարկությունների, մինիստրությունների, գերատեսչությունների ղեկավարների, Հայաստանի կոմկուսի շրջկոմների ու քաղկոմների, սկզբնական կուսակցական կազմակերպությունների առջև լուրջ խնդիրներ են ծառացած թողարկվող արտադրանքի որակը ըստ ամենայնի բարձրացնելու, տեսականին մշտապես նորացնելու, տեխնիկատնտեսական և շահագործական ավելի բարձր տվյալներ ունեցող նոր արտադրատեսակներ յուրացնելու ասպարեզում: Թողարկվող արտադրանքը պետք է համապատասխանի համաշխարհային ստանդարտներին, լինի դիմացկուն ու հուսալի:

Նոր ու բազմակողմանի ուսումնասիրություններից հետո ՀԿԿ Կենտկոմը քննարկեց այդ հարցը: Ինչպես պարզվեց, արտադրանքի որակի բարձրացման գործում ձեռք բերված հաջողությունների հետ մեկտեղ, մի շարք ճյուղերում, առանձին ձեռնարկություններում և միավորումներում դեռևս քիչ չեն տեխնոլոգիական ռեժիմների, ստանդարտների պահանջների և տեխնիկական պայմանների կոպիտ խախտման դեպքերը, և, որպես հետևանք, ոչ ստանդարտ, ցածրորակ արտադրանքի թողարկումը:

Դեռևս փոքրաթիվ ձեռնարկություններ են թողարկում որականիշ ունեցող արտադրանք:

Արտադրական պլանները ամեն գնով, երբեմն էլ ի հաշիվ որակի, կատարելու արատավոր պրակտիկան դեռևս գոյություն ունի հանրապետության առանձին մինիստրությունների, գերատեսչությունների, միավորումների և ձեռնարկությունների մի շարք ղեկավարների գործունեության մեջ: Շատ դեպքերում մի շարք ձեռնարկությունների կողմից թողարկվող արտադրանքի տեխնիկական մակարդակի և որակի արմատական բարձրացման համար կիրառված միջոցառումները ժամանակավոր, էպիզոդիկ բնույթ են կրում, չեն ընդգրկում անհրաժեշտ տեխնիկա-տնտեսական, սոցիալական ու կազմակերպական հարցերի ամբողջ կոմպլեքսը:

Դրա հետևանքով շինանյութերի արդյունաբերության, կապի, ավտոմոբիլային արդյունաբերության մինիստրությունների ու գունավոր մետալուրգիայի վարչության ձեռնարկություններում ու միավորումներում ոչ մի արտադրատեսակ դեռևս չի արժանացել պետական որականիշի, իսկ քիմիական, հաստոցագործիքաշինական, անտառային և փայտամշակման արդյունաբերության և այլ ձեռնարկություններում շարունակվում է երկրորդ կարգով ատեստավորված և արտադրությունից հանվելու ենթակա արտադրանքի թողարկումը:

Ցածրորակ արտադրանք թողարկելու հետևանքով հանրապետության շատ ձեռնարկություններ դեռևս շարունակում են ստանալ զգալի քանակությամբ



ռեկլամացիաներ, վճարում են տուգանքներ, ենթարկվում տնտեսական սանկցիաների:

Խնդիրն այն է, որպեսզի յուրաքանչյուր գործարանում արագացվի արտադրանքի որակի կառավարման սիստեմի ներդրումը, բարձրացվի ստանդարտների դերը արտադրության մեջ, ամրապնդվի տեխնոլոգիական և արտադրական կարգապահությունը: Անհրաժեշտ է ապահովել գիտնականների, կոնստրուկտորների, տեխնոլոգների, արտադրության կազմակերպիչների, բանվորների ակտիվ, կոլեկտիվ ստեղծագործությունը՝ թողարկվող արտադրանքի որակը, դրա տեխնիկական մակարդակը, հուսալիությունն ու երկարակեցությունը բարձրացնելու նպատակով: Մենք պետք է խորապես ուսումնասիրենք և տարածենք Լվովի մարզի ձեռնարկությունների առաջավոր փորձը, որն արժանացել է մեր կուսակցության Կենտրոնական կոմիտեի հավանությանը:

Տասներորդ հնգամյակի հենց առաջին տարվանից անհրաժեշտ է լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը՝ «Որակի հնգամյակին՝ բանվորական երաշխիք» նշանաբանով: Հասնել այն բանին, որ ձեռնարկության մակնիշի պատվի համար պայքարը դառնա կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի գործը: Աշխատանքի կազմակերպումը բարելավելու, աշխատողների որակավորումը բարձրացնելու, արտադրության բոլոր օղակներում աշխատանքի որակը բարելավելու միջոցով ապահովել բարձրորակ արտադրանքի կայուն թողարկումը:

Մենք պետք է անդուլ կերպով աշխատենք արդյունաբերական արտադրության հետագա համակենտրոնացման և մասնագիտացման ուղղությամբ, որն օբյեկտիվ հնարավորություններ է ստեղծում գիտատեխնիկական առաջադիմությունն արագացնելու, արտադրության արդյունավետությունը բարձրացնելու և կառավարման մեթոդները կատարելագործելու համար:

Այդ խնդրի լուծման ուղին նոր արտադրական, արտադրատեխնիկական և գիտա-արտադրական միավորումների ստեղծումն է: Դա կարևոր և հրատապ է մանավանդ մեր հանրապետության համար՝ հաշվի առնելով, որ արդյունաբերության հիմնական ֆոնդերի մի զգալի մասի փոշիացումը բազմաթիվ մանր ձեռնարկությունների միջև, որոնք, որպես կանոն, ունեն արտադրության մանր-սերիական ու միավորային բնույթ, արտադրության տեխնոլոգիայի և կազմակերպման ցածր մակարդակ, չունեն անհրաժեշտ գիտական և կոնստրուկտորական բազա, տեխնիկական և տնտեսական հնարավորություններ արտադրանքի և արտադրության տեխնիկական մակարդակը բարձրացնելու, այն մեքենայացնելու և ավտոմատացնելու, կոլեկտիվի սոցիալական զարգացման հարցերը լուծելու համար:

Սակայն այդ հարկավոր ու կարևոր աշխատանքին անհրաժեշտ է մոտենալ ոչ թե ձևականորեն, այլ ստեղծագործաբար, մտածված կերպով, հաշվի առնելով արտադրությունների մասնագիտացման, դրանց օրգանական միաձուլման բոլոր ասպեկտները, այն ընկալել ոչ որպես պարզապես «ցուցանակների փոխարինում», այլ որպես արտադրության զարգացման նոր, առավել բարձր աստիճան:

Տեխնիկական առաջադիմությունն արագացնելու, արտադրության վերակառուցման և տեխնիկական վերազինման լայն ծրագիր իրականացնելու, նոր արտադրատեսակներ յուրացնելու և թողարկելու, արտադրանքի տեխնիկա-տնտեսական ցուցանիշները բարձրացնելու, արդյունաբերական արտադրության վիճակը համակողմանիորեն բարելավելու գործում հատուկ տեղ պետք է հատկացվի ճյուղային գիտա-հետազոտական ինստիտուտներին ու կոնստրուկտորական-տեխնոլոգիական կազմակերպություններին:

Մինիստրություններն ու գերատեսչությունները, արդյունաբերական ձեռնարկությունների և վերոհիշյալ հիմնարկների կուսակցական կազմակերպությունները, շրջկոմներն ու քաղկոմները պետք է հասնեն գիտության ու արտադրության համագործակցության առավել կոնկրետ և արդյունավետ արդյունքների, ամրապնդեն արդյունաբերական ձեռնարկությունների ու գիտա-հետա-

ղոտական ինստիտուտների, կոնստրուկտորական և տեխնոլոգիական կազմակերպությունների կապը:

Արդյունաբերության զարգացման արդի փուլում կարևորագույն նշանակություն է ստանում արտադրության կառավարման հետագա կատարելագործումը ավտոմատացված սիստեմների ներդրման բազայի վրա՝ կիրառելով հաշվողական տեխնիկայի միջոցները:

Առաջիկա ժամանակաշրջանի խնդիրն է՝ արդյունաբերության մեջ արագորեն արմատավորել կառավարման ավտոմատացված սիստեմներ, տեխնոլոգիական պրոցեսների կառավարման ավտոմատացված սիստեմներ՝ ապահովելով գործնական և տնտեսական բարձր արդյունավետություն:

Մենք պետք է համակողմանի բարելավենք արդյունաբերական արտադրության տեղաբաշխումն ու կառուցվածքը, հաշվի առնելով առկա հումքային էներգետիկ և աշխատանքային ռեսուրսները, հանրապետության բնության պահպանության շահերը:

Անհրաժեշտ է ավելի արագ տեմպերով զարգացնել մեքենաշինության նվազ-էներգատար, նվազ-նյութատար, բայց աշխատատար ճյուղերը և արդյունաբերության այլ ճյուղեր, որոնք ունեն արտադրության տեխնիկական բարձր մակարդակ և կուլտուրա:

Արդյունաբերության ընդհանուր կառուցվածքի բարելավման հետ մեկտեղ անհրաժեշտ է բարելավել նրա ներճյուղային կառուցվածքը, հասնել առավել արդյունավետ ենթաճյուղերի զարգացման, թողարկել ժողովրդական տնտեսությանը հարկավոր արտադրանքի առավել շահութաբեր տեսակներ: Այս տեսակետից հսկայական հնարավորություններ ունի սննդարդյունաբերությունը:

Հաշվետու ժամանակաշրջանում Կենտրոնական կոմիտեն սիստեմատիկորեն քննության է առել բնության պահպանության միջոցառումների մշակման ու իրագործման հետ կապված հարցերը: Մշակվել են մեծ մասշտաբի միջոցառումներ, հատկացվել են զգալի կապիտալ միջոցներ: Այժմ անհրաժեշտ է իրականացնել դրանք, ուժեղացնել այդ ուղղությամբ հսկողությունը ձեռնարկությունների գործունեության նկատմամբ, մաքրիչ և գազափոշեորսիչ կառուցվածքների շինարարության ընթացքի նկատմամբ: Նոր ձեռնարկությունները և արտադրամասերը նախագծելիս բնության պահպանության հարցերը անհրաժեշտ է լուծել կոմպլեքսայնորեն, կիրառելով ջրաանդրադարձ և անթափոն տեխնոլոգիա: Այսուհետև չպետք է թույլ տալ շրջակա միջավայրը աղտոտող ձեռնարկությունների կառուցում:

Արդյունաբերության բնագավառում հանրապետության կուսակցական կազմակերպության գլխավոր խնդիրն է՝ ավելի լրիվ ապահովել բարձրորակ արդյունաբերական արտադրանքի նկատմամբ ժողովրդական տնտեսության և բնակչության պահանջմունքը, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, ապահովել թողարկվող արտադրանքի տեխնիկական մակարդակի, որակի, հուսալիության և երկարակեցության ու հանրային արտադրության արդյունավետության հաստատուն բարձրացումը, գիտատեխնիկական առաջադիմության արագացումը, մշտապես կատարելագործել կառավարման մեթոդները և բարելավել արտադրության բոլոր օղակների աշխատանքի որակը:

## ՏՐԱՆՍՊՈՐՏԻ ԵՎ ԿԱՊԻ ԱՇԽԱՏԱՆՔԸ

Իններորդ հնգամյակի տարիներին հանրապետության տրանսպորտի աշխատողները հիմնականում կատարել են իրենց առջև դրված խնդիրները:

Շահագործման հանձնվեցին Աղստաֆա—Իջևան, Սևան—Շորժա երկաթուղագծերը:

Բարելավվել է երկաթուղային տրանսպորտի աշխատանքը: Բեռների առաքման, բեռնաշրջանառության և վագոնների շրջապտույտի արագացման տարեկան պլանների միագումարով հնգամյակի առաջադրանքները կատարվել են: Սակայն այդ գործում դեռևս զգալի թերություններ կան: Դեռևս լրիվ ապահովված չէ գնացքների երթևեկության անվտանգությունը, ցածր է աշխատանքային կարգապահությունը: Տնտեսական շատ ղեկավարների անպա-



տասխանատու վերաբերմունքի պատճառով մեծ քանակությամբ վագոններ երկար ժամանակ մնում են չբեռնաթափված, հատկապես տոնական և հանգստյան օրերին:

Հնգամյակի տարիներին զգալիորեն զարգացավ հանրապետության ավտոմոբիլային ճանապարհների ցանցը: Ավարտվեց այնպիսի կարևոր օբյեկտների շինարարությունը, ինչպիսիք են Երևան—Սևան ավտոմայրուղին, Պուշկինյան լեռնանցքի թունելը, Էջմիածին—Հոկտեմբերյան, Ղափան—Գորիս ավտոճանապարհները և այլն:

Որոշակի հաջողությունների հասան ավտոմոբիլային տրանսպորտի աշխատողները: Ընդհանուր օգտագործման ավտոմոբիլային տրանսպորտի բեռնաշրջանառությունը իններորդ հնգամյակում աճեց ավելի քան 2 անգամ, ուղևորաշրջանառությունը՝ ավելի քան 1,5 անգամ: Հանրապետության տարբեր քաղաքներում կառուցվել և վերակառուցվել են շատ ավտոտրանսպորտային ձեռնարկություններ, ավտոկայաններ:

Սակայն որոշ ավտոտրանսպորտային ձեռնարկություններում աշխատանքի անբավարար կազմակերպման, տեխնիկական սպասարկման ցածր որակի և ավտոմոբիլային կցանների թերի կիրառման հետևանքով, իջնում են ավտոմոբիլները գիծ հանելու և բեռնունակությունն օգտագործելու սահմանված գործակիցները: Բավարար ուշադրություն չի դարձվում կադրերի պատրաստման, տվյալ աշխատավայրում նրանց ամրապնդման և դաստիարակության հարցերին, որն առաջ է բերում վարորդների և նորոգող մասնագետների մեծ հոսունություն:

Բեռնատար ավտոտրանսպորտի առանձին օղակներում դեռևս տեղի են ունենում պետական կարգապահության խախտումների փաստեր և փոխադրումների ծավալների հավելագրումներ:

Ավտոմոբիլային պարկի աշխատանքի արդյունավետության իջեցնող էական պատճառներից մեկը հանդիսանում է նրա մասնատվածությունը բազմաթիվ գերատեսչական փոքր ավտոպարկերի, որոնց մեքենաների զգալի մասը ֆիզիկապես ու բարոյապես հնացել է: Անհրաժեշտ է վճռականորեն խոշորացնել գերատեսչական ավտոտրանսպորտի տնտեսությունները, մաքսիմալ կերպով կենտրոնացնել բեռնափոխադրումները, մասնագիտացնել ավտոտնտեսությունները, ավելացնել մեծ բեռնատարողություն ունեցող մեքենաների տեսակարար կշիռը:

Դեռևս անբավարար է քաղաքային մարդատար տրանսպորտի աշխատանքը: Ավտոբուսային և տրամվայի երթուղիները չեն ապահովվում պլանավորված քանակությամբ մեքենաներով: Դա լուրջ դժվարություններ է ստեղծում բնակչության համար, հատկապես գերբեռնվածության ժամերին և երեկոյան, մի բան, որ առաջ է բերում քաղաքացիների արդարացի դժգոհությունը:

Կուսակցության Երևանի քաղաքային կոմիտեն, տրանսպորտի աշխատողների հետ համատեղ, մեծ աշխատանք է կատարել մարդատար տրանսպորտում պետական կարգ ու կանոն հաստատելու ուղղությամբ: Անհրաժեշտ է բազմապատկել ջանքերը, լիովին վերացնել ուղևորների սպասարկման գործում տեղ գտած բացասական երևույթները:

Արագ տեմպերով է զարգանում ավիացիան: Քաղաքացիական ավիացիայի հայկական վարչությունը գերակատարել է ուղևորների փոխադրումների հնգամյակի պլանային առաջադրանքները: Կառուցվել են թռիչք-վայրէջքի շերտեր Երևանի «Հարավային», Ղափանի, Ջերմուկի, Լենինականի օդանավակայաններում, օդանավակայան և թռիչքադաշտ Օձունում և այլն: Բացվել են մեր հանրապետությունը Միության տարբեր քաղաքների հետ կապող նոր երթուղիներ:

Տրանսպորտային մինիստրությունների և գերատեսչությունների կուսակցական կազմակերպություններն ու ղեկավարները պետք է ավելի կոնկրետացնեն իրենց ենթակա ձեռնարկությունների աշխատանքի կազմակերպումը բարելավելու հարցերով, բարձրացնեն պահանջկոտությունը կադրերի նկատմամբ: Անհրաժեշտ է ապահովել բեռնային և ուղևորային բոլոր տեսակի փոխադրումների կանոնավորությունն ու անվտանգությունը, բարելավել ճանա-





պարհների տեխնիկական վիճակը, բարձրացնել ուղևորների սպասարկման որակն ու կուլտուրան:

Զգալի հաջողություններ ունեն կապի աշխատողները: Կապի արտադրանքի ծավալի իններորդ հնգամյակի պլանը կատարվել է 102,2 տոկոսով: Ավարտվել է Երևան—Մեղրի, Կամո—Մարտունի միջքաղաքային հեռախոսային կապի կաբելային գծերի կառուցումը: Կառուցվել են ռետրանսլյացիոն կայաններ Լենինականում, Սիսիանում, Ամասիայում, շահագործման են հանձնվել ռադիոռելեային գծեր 161 կիլոմետր երկարությամբ:

Ներկայումս հեռուստատեսության հանրապետական առաջին ծրագիրը դիտում է հանրապետության բնակչության 97 տոկոսը, իսկ կենտրոնական հեռուստատեսության առաջին ծրագիրը՝ 80 տոկոսը: Շահագործման են հանձնվել 101 հազար համարով քաղաքային ավտոմատ հեռախոսակայաններ և 20 հազար համարով ընդհանուր օգտագործման գյուղական ավտոմատ հեռախոսակայաններ:

Սակայն այսօր հարկավոր է մեկ անգամ ևս կապի աշխատողների ուշադրությունը բևեռել հեռախոսակապի սպասարկման դեռևս ցածր կուլտուրայի և նրա անկայուն աշխատանքի վրա: Դեռևս լիովին չեն վերացվել չարաշահումների և պետական կարգապահության խախտումների դեպքերը:

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆ

Ընկերնե՛ր:

Հաշվետու ժամանակաշրջանում հետագա զարգացում ապրեց հանրապետության գյուղատնտեսությունը:

Իններորդ հնգամյակի տարիներին հանրապետության գյուղատնտեսության մեջ պետական կապիտալ ներդրումների ծավալը կազմել է 736 միլիոն ռուբլի, շարք են մտել 49 հազար հեկտար նոր ոռոգելի հողատարածություններ, ջրարբիացվել են 126 հազար հեկտար արոտավայր ու մարգագետին, չորացվել են 7,6 հազար հեկտար նոր հողեր:

Գյուղատնտեսության համախառն արտադրանքի տարեկան միջին ծավալը, ութերորդ հնգամյակի համեմատությամբ, մեծացավ 21,9 տոկոսով: Զգալիորեն աճել է գյուղատնտեսության տեխնիկական զինվածությունը, բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը: Որոշ զարգացում են ստացել արդյունաբերական հիմունքներով անասնապահական մթերքներ արտադրող պետական մասնագիտացված ձեռնարկությունները և պաշտպանված գրունտի բանջարաբուծությունը: Ավելացել են բուսաբուծական և անասնապահական մթերքների արտադրությունն ու մթերումները, բարձրացել է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և որոշ չափով անասունների մթերատվությունը:

Մեզ չեն կարող չուրախացնել Անիի շրջանի դաշտավարների, Մասիսի բանջարաբույծների, Ախուրյանի ճակնդեղագործների, Արարատի խաղողագործների, Նոյեմբերյանի պտղաբույծների, Վարդենիսի ծխախոտագործների, Կալինինոյի անասնապահների և մի շարք այլ շրջանների, շատ կոլտնտեսությունների ու սովխոզների առաջավոր կոլեկտիվների հաջողությունները: Նրանք մեծ ավանդ են ներդրել գյուղատնտեսության զարգացման հնգամյա պլանի կատարման գործում:

Ձեռք բերված հաջողությունների հետ մեկտեղ, հանրապետության գյուղատնտեսական արտադրության զարգացման և նրա հետագա ինտենսիվացման գործում տեղ են գտել նաև լուրջ թերություններ, բացեր և վրիպումներ: Բանն այն է, որ գյուղատնտեսության զարգացման առանձին հարցեր լուծվել են առանց փոխադարձ համաձայնեցվածության: Առանձին դեպքերում թույլ են տրվել վոլյունտարիզմի և սուբյեկտիվիզմի դրսևորումներ, կուսակցության ժամանակակից ագրարային քաղաքականության հիմնարար սկզբունքների էության թերըմբռնում: Անհրաժեշտ բարձրության վրա չի գտնվել կուսակցական և պետական կարգապահությունը:

Մի շարք շրջաններ չեն կատարել հնգամյակի առաջադրանքները՝ այս կամ այն ցուցանիշի գծով: Ավելին, Գուգարքի, Գորիսի շրջանները չեն ապահովել



բուսաբուծական մթերքների գրեթե բոլոր տեսակների արտադրության և վաճառքի հնգամյա պլանների կատարումը:

Արտաշատի, Էջմիածնի, Հոկտեմբերյանի շրջանները, որոնք տալիս են հանրապետության խաղողի շուրջ 50 տոկոսը, չեն կատարել այդ կարևոր մթերքի արտադրության ու վաճառքի հնգամյա պլանը: Ազիզբեկովի, Ամասիայի շրջանների կոլտնտեսություններն ու սովխոզները չեն ապահովել մսի, կաթի, ձվի և բրդի արտադրության պլանների կատարումը:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի1975 թվականի հունվարյան և հուլիսյան պլենումները հանրապետության գյուղատնտեսության աճի տեմպերը կասեցնող թերությունների քննադատական խոր վերլուծության հիման վրա տվեցին իրավիճակի սկզբունքային գնահատականը, նշեցին այդ թերությունները ծնող պատճառների վերացման և գյուղատնտեսական արտադրության հետագա զարգացման ուղիները:

Կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումների որոշումները արժանացան գյուղի կոմունիստների և բոլոր աշխատավորների լիակատար հավանությանն ու պաշտպանությանը: Այդ որոշումների գործնական իրականացումը թույլ տվեց արդեն հնգամյակի եզրափակիչ տարում հասնել շոշափելի արդյունքների: Բավական է նշել, որ անցած անբարենպաստ տարում գյուղատնտեսության համախառն արտադրանքի ծավալը գերազանցեց հնգամյակի նախորդ բոլոր տարիների արտադրանքի մակարդակը: Հանրապետությունը կատարեց պետությանը գյուղատնտեսական գրեթե բոլոր մթերքների վաճառքի պլանային առաջադրանքները: Առանձին մթերքների վաճառքի տարեկան պլանների զգալի գերակատարման շնորհիվ փակվեց հնգամյակի նախորդ տարիներին առաջացած ճեղքվածքը: Կոլտնտեսություններում ու պետական տնտեսություններում 25 տոկոսով ավելի կեր կուտակվեց, քան նախորդ տարում:

Անցյալ տարվա աշխատանքի փորձը ցույց է տալիս, թե ինչպիսի արդյունքների կարելի է հասնել եղած հնարավորությունների ռացիոնալ օգտագործման, սոցիալիստական մրցության լայն ծավալման, կուսակցական, պետական և աշխատանքային կարգապահության բարձրացման, պլանային առաջադրանքների կատարման համար գյուղի աշխատավորներին մոբիլիզացնելու միջոցով:

Այնուամենայնիվ, եղած հնարավորությունների և ռեզերվների օգտագործման առումով, գյուղատնտեսության բնագավառի ձեռքբերումները մեզ չեն կարող գոհացնել:

Գյուղատնտեսության համախառն արտադրանքի ծավալի աճին լրջորեն խոչընդոտում է հողագործության և անասնապահության մի շարք հիմնական մթերքների արտադրության պլանների սիստեմատիկ թերակատարումը: Այս հանգամանքը ամեն տարի լարված իրավիճակ է ստեղծում նաև դրանց մթերման առաջադրանքների կատարման, ինչպես նաև ընդլայնված վերարտադրության կազմակերպման գործում:

Պետությանը գյուղատնտեսական մթերքներ վաճառելու պլանների հաջող և սիստեմատիկ կատարումն ապահովելու համար անհրաժեշտ է կուսակցական, սովետական, գյուղատնտեսական մարմինների և տնտեսությունների ղեկավարներից պահանջել, որպեսզի յուրաքանչյուր կոլտնտեսություն և սովխոզ կատարի բոլոր մթերքների արտադրության տարեկան պլանը:

Պլանը օրենք է, այն պետք է անվերապահորեն կատարվի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում:

Գյուղի կոմունիստների, ողջ աշխատավորության, կուսակցական, սովետական և գյուղատնտեսական մարմինների առաջնահերթ խնդիրներից մեկը հողագործության վարման կուլտուրայի ըստ ամենայնի բարձրացումն է, որը շատ շրջաններում դեռևս զգալիորեն ետ է մնում գյուղատնտեսական արտադրության զարգացման արդի փուլի պահանջներից:

Բազմաթիվ տնտեսություններում ոչ-ռացիոնալ և անտնտեսվար են օգտագործվում հողային և ջրային ռեսուրսները, գյուղատնտեսական տեխնիկան, հանքային և օրգանական պարարտանյութերը, անտեսվում են ցանքաշրջանա-

Հանրապետությունում որոշ աշխատանք է կատարվել անասունների և թռչունների գլխաքանակն ավելացնելու, դրանց մթերատվությունը բարձրացնելու ասպարեզում։ Սակայն շատ տնտեսություններում անասնապահության ներկա վիճակը չի համապատասխանում արդի խնդիրների պահանջներին։ Բավական է ասել, որ վերջին հինգ տարում հանրապետության կոլտնտեսություններում և սովխոզներում կովերի միջին կաթնատվությունը ավելացել է միայն 192 կիլոգրամով և այժմ կազմում է 1.687 կիլոգրամ, որը զգալիորեն ցածր է միութենական միջինից։ Պետությանը հանձնվող խոշոր եղջերավոր անասունների միջին քաշը ավելացել է ընդամենը 21 կիլոգրամով, իսկ ոչխարներինը նույնիսկ նվազել է։ Կովերի ստերջությունը կազմում է միջին հաշվով 25—27 տոկոս, ոչխարներինը՝ ավելի քան 20 տոկոս։

Անասնապահության ցածր մթերատվության հիմնական պատճառներից մեկը սելեկցիոն ցեղաբուծական աշխատանքի անբավարար դրվածքն է, հոտի ցածր վերարտադրությունը։ Պետք է արմատապես բարելավել ցեղաբուծական գործի դրվածքը, կազմակերպել մթերատվության հեռանկարային տվյալներ ունեցող էգ մատղաշների նպատակային աճեցում։ Հանրային հոտի նորմալ վերարտադրությունը ապահովելու և նրա մթերատվությունը բարձրացնելու նպատակով անհրաժեշտ է զգալիորեն ավելացնել կովերի գլխաքանակը, բարելավել կենդանիների կերակրման գործը, խնամքի և պահվածքի պայմանները։ Հարկավոր է լուծել արդյունաբերական եղանակով մթերքներ արտադրող համալիրները բարձր մթերատու կենդանիներով կոմպլեկտավորելու հարցը։

Հանրապետության առաջավոր տնտեսությունների փորձը ցույց է տալիս, թե ինչպիսի արդյունքի կարելի է հասնել մատղաշների ինտենսիվ բտումը կազմակերպելու միջոցով։ Առաջիկայում մեր խնդիրն է կոլտնտեսություններում, սովխոզներում և միջտնտեսային ձեռնարկություններում կազմակերպել անասունների ինտենսիվ բտումն ու աճեցումը։

Անասնապահության մթերատվության աճի ցածր տեմպերը պայմանավորված են նաև կերի կայուն բազայի բացակայությամբ։ Տարիներ շարունակ հանրային հոտը չի ապահովվում պահանջվող քանակի ու որակի հյութալի և կոշտ կերերով։ Դա հետևանք է այն բանի, որ գյուղատնտեսական կուլտուրաների ցանքատարածությունների կառուցվածքում դեռևս ցածր է բազմամյա և միամյա խոտաբույսերի տեսակարար կշիռը, անբավարար աշխատանք է տարվում կերային կուլտուրաների բերքատվության բարձրացման ուղղությամբ, բարձիթողի վիճակում է սերմնաբուծության գործը։

Առաջիկայում կերարտադրությունը մեծ չափով ավելացնելու համար անհրաժեշտ է ընդարձակել կերային կուլտուրաների ցանքատարածությունը, բարելավել բնական կերահանդակների վիճակը, խոտացանության տակ դնել լքված հողերը, բարձրացնել ցանովի և արոտամարգագետնային խոտաբույսերի բերքատվությունը։ Այս խնդրի իրականացումը հրամայաբար պահանջում է հիմնովին վերակառուցել սերմնաբուծության գործը։ Հարկավոր է ստեղծել սերմնաբուծական մասնագիտացված տնտեսություններ և միավորումներ, ապահովել հանրապետության պահանջը բարձր որակի սորտային սերմերով։

Մեզ մոտ չափազանց վատ է կերի օգտագործումը։ Կերի որակը փաստորեն չի վերահսկվում մասնագետների, տնտեսությունների ղեկավարների կողմից։

Կերաբաժինների ոչ-լիարժեքությունը և ոչ-հաշվեկշռվածությունը իջեցնում են կերերի փոխհատուցումը և ի վերջո մեծացնում արտադրանքի մեկ միավորին ընկնող ծախսումները։ Դրանով պետք է մեծ մասամբ բացատրել, որ խոշոր եղջերավոր անասունի քաշաճի մեկ ցենտների վրա հանրապետությունում միջին հաշվով ծախսվում է 1.400—1.500 կերամիավոր, իսկ մեկ ցենտներ կաթի վրա՝ 160—180 կերամիավոր, որը զգալիորեն գերազանցում է սահմանված նորմաները և միջին միութենական ցուցանիշները։ Կերերը անհրաժեշտ չափով չեն հարստացվում սպիտակուցային նյութերով՝ միզանյութով և միկրոկենսաբանական սինթեզի արտադրանքներով։

Բացահայտորեն անբավարար ուշադրություն է նվիրվում կերի կուտակման և պահպանման առաջադիմական եղանակներին։ Անասնապահական ֆեր-



մաների մեծ մասում չկան կերի արտադրամասեր, իսկ դրանց կառուցումը աններելիորեն ձգձգվում է։

Թե որքան վճռական է կերի կայուն բազայի ստեղծման, դրա որակի բարձրացման, գիտության և առաջավոր փորձի, նոր տեխնոլոգիայի արմատավորման դերը անասնապահական մթերքների արտադրության ավելացման գործում, վկայում է Հրազդանի շրջանի օրինակը (շրջկոմի քարտուղար՝ ընկ. Գ. Բարիկյան, շրջգործկոմի նախագահ՝ ընկ. Ռ. Պետրոսյան)։ Վերջին տարիներին այստեղ նկատելիորեն ընդարձակվել է կերային կուլտուրաների ցանքատարածությունը, բոլոր տնտեսություններում ներդրվել է սենաժի պատրաստումը, հինգ տնտեսություններում գործում են տիպային կերախոհանոցներ, շեֆական օգնությամբ կառուցվել են մեքենայացված ութ անասնապահական օբյեկտներ, լայնորեն արմատավորվել է մատղաշների ինտենսիվ աճեցման եղանակը, սկսվել է ամիդոկոնցենտրատային խառնուրդի արտադրությունը։ Այս միջոցառումների շնորհիվ իններորդ հնգամյակում կովերի միջին կաթնատվությունը ավելացավ 440 կիլոգրամով և հասավ 1.834 կիլոգրամի, իսկ պետությանը վաճառված խոշոր եղջերավոր անասունների կենդանի քաշն ավելացավ 68 կիլոգրամով և կազմեց 284 կիլոգրամ։

Հարևան Սևանի շրջանում (շրջկոմի քարտուղար՝ ընկ. Ս. Զաքարյան, շրջգործկոմի նախագահ՝ ընկ. Ս. Հակոբյան), որտեղ հողակլիմայական պայմանները գրեթե նույնն են, անհրաժեշտ կերի բազայի ստեղծման նկատմամբ անտարբեր վերաբերմունքի հետևանքով անասնապահության բնագավառում էական տեղաշարժեր գրեթե չկան։ Այստեղ կովերի միջին կաթնատվությունը կազմեց ընդամենը 1.591 կիլոգրամ, իսկ պետությանը վաճառված խոշոր եղջերավոր անասունների միջին կենդանի քաշը՝ 221 կիլոգրամ։

Կերի կայուն բազայի ստեղծման, կերերի ռացիոնալ օգտագործման հարցերը պետք է գտնվեն հանրապետության կուսակցական, տնտեսական մարմինների, կոլտնտեսությունների ու սովխոզների, նրանց սկզբնական կուսակցական կազմակերպությունների ամենօրյա ուշադրության կենտրոնում։

Անհրաժեշտ է հատուկ ուշադրություն նվիրել արտադրվող գյուղատնտեսական մթերքների որակի բարձրացման հարցերին։ Դեռևս ցածր է խաղողի շաքարայնությունը, չի ավելանում ծխախոտի բարձր ապրանքային տեսակների արտադրությունը, նվազել է կաթի միջին յուղայնությունը։

Կոլտնտեսություններն ու սովխոզները ամեն տարի պետությանը վաճառում են մեծ քանակությամբ ոչ-ստանդարտ պտուղ-բանջարեղեն, կարտոֆիլ և այլ մթերքներ։ Մասիսի, Նոյեմբերյանի, Արարատի, Կամոյի շրջաններում պետությանը վաճառված կաթի ավելի քան 25 տոկոսը չի համապատասխանում ստանդարտին։ Հանրապետության տնտեսություններում վերջին երեք տարում պետությանը վաճառված խոշոր եղջերավոր անասունների 21—24 տոկոսը եղել է միջակից ցածր գիրության, իսկ ոչխարների 15—25 տոկոսը հանձնվում է հյուծված վիճակում։ Այս ամենը մեծ վնաս է հասցնում տնտեսություններին և պետությանը։

Մթերումների մինիստրությունը (մինիստր՝ ընկ. Օ. Հովակիմյան) դեռևս անբավարար է կատարում մթերվող գյուղատնտեսական մթերքների և հումքի բարձր որակն ապահովելու վերահսկման իր ֆունկցիան։ Ավելորդ չի լինի նկատել, որ այդ մինիստրության ձեռնարկությունների կողմից թողարկվող արտադրանքի՝ համակցված կերերի, որակը առաջ է բերում արդարացի դժգոհություն։

Մեր գլխավոր խնդիրն է, արտադրության ծավալները մշտապես մեծացնելու հետ մեկտեղ, առանձնահատուկ ուշադրություն նվիրել գյուղատնտեսական մթերքների որակի բարձրացման հարցերին։

Գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման, նրա արդյունավետության բարձրացման հիմնական ուղղություններից են հողերի մելիորացման հետագա ընդլայնումը, մեքենայացումն ու քիմիացումը։

Հանրապետությունում երկրագործությունը, ինչպես հայտնի է, վարվում է հողակլիմայական բարդ պայմաններում, բայց մեր գյուղատնտեսության համար ամենաբարդ պրոբլեմը եղել և մնում է սակավաջրությունը։ Փաստորեն

մեղանում չի լինում այնպիսի տարի, որ մի քանի կարևոր գյուղատնտեսական շրջաններ այս կամ այն չափով չենթարկվեն երաշտի ազդեցությանը։

Անհրաժեշտ է հաշվի առնել նաև այն, որ տեղումների անբավարար քանակության գոտում են գտնվում գրեթե բոլոր կարևորագույն գյուղատնտեսական շրջանները։ Այդ պայմաններում մելիորացիան և ոռոգումը երաշխավորված բերքի ստացման կարևոր գործոններն են։ Այս գործում ևս գոյություն ունեն լուրջ թերություններ և չլուծված հարցեր։ Նախ ոռոգելի ջրի առանց այն էլ սուղ պաշարների զգալի մասը փաստորեն կորչում է ոռոգիչ սիստեմների անբավարար վիճակի և ինչպես ջրային տնտեսության սիստեմում, այնպես էլ շատ կոլտնտեսություններում ու սովխոզներում աշխատող մեր խիզատորների անտնտեսվարության հետևանքով։

Հանրապետության մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրությունը (մինիստր՝ ընկ. Գ. Բաղրամյան) և գյուղատնտեսության մինիստրությունը (մինիստր՝ ընկ. Հ. Թարջումանյան) պետք է յուրաքանչյուր շրջանի և տնտեսության համար մշակեն միջտնտեսային և ներտնտեսային ոռոգիչ ցանցի վիճակը և ոռոգման ջրի օգտագործումը բարելավելու միջոցառումներ, գործուն միջոցներ ձեռնարկեն լայնորեն արմատավորելու ջրման առաջադիմական մեթոդները, սահմանեն այդ խնդիրների իրականացման կոնկրետ ժամկետներ և նախատեսեն անհրաժեշտ միջոցներ։

Կուսակցական, սովետական և գյուղատնտեսական մարմինները պետք է կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարներից, բոլոր հողօգտագործողներից պահանջեն վերջ տալ ջրի օգտագործման նկատմամբ անտարբեր վերաբերմունքին, բոլոր միջոցները ձեռնարկեն վերացնելու այդ ասպարեզում եղած թերությունները։

Մյուս կողմից, հողերի մելիորացման և աղակալած հողերի գյուղատնտեսական յուրացման աշխատանքները հաճախ իրականացվել են ոչ կոմպլեքսային ձևով, բազմաթիվ մանր հողակտորների վրա, որը հանգեցրել է հատկացված միջոցների փոշիացմանը, իջեցրել դրանց արդյունավետությունը։

Անհրաժեշտ է հողերի մելիորացման և աղակալած հողերի գյուղատնտեսական յուրացման աշխատանքները կատարել գիտականորեն հիմնավորված գլխավոր սխեմայի պահանջներին համապատասխան՝ հողային մեծ զանգվածների վրա, հաշվի առնելով իրացված հողերում ագրոմիջոցառումների ողջ կոմպլեքսի հետագա իրականացման հնարավորությունները։

Գյուղատնտեսության մեքենայացումը աշխատանքի արտադրողականության բարձրացման հիմնական պայմաններից մեկն է։

Վերջին տարիներին հանրապետության կոլտնտեսություններն ու սովխոզները համալրվել են և առաջիկայում ևս կհամալրվեն ժամանակակից մեքենաներով ու մեխանիզմներով։ Սակայն հանրապետության շատ տնտեսություններում նոր տեխնիկան դանդաղ է արմատավորվում։ Ցածր է աշխատատար պրոցեսների մեքենայացման մակարդակը։ Փաստորեն, բացառությամբ հողի նախացանքային մշակության, ձեռքով են կատարվում շաքարի ճակնդեղի, ծխախոտի, խորդենու մշակության և բերքահավաքի աշխատանքները։

Անթույլատրելի ցածր է աշխատատար պրոցեսների մեքենայացման մակարդակը խաղողագործության և պտղաբուծության ասպարեզում։ Այնպիսի աշխատատար պրոցեսներ, ինչպիսիք են այգեթաղի և այգեբացի աշխատանքները, մեքենայացված են միայն 4,7 տոկոսով։ Հանրապետությունում կոմպլեքսայնորեն մեքենայացված է անասնապահական ֆերմաների միայն 6 տոկոսը։ Կովերի կիթը մեքենայացված է 23,6 տոկոսով։ Այս ամենը հնարավորություն չի ընձեռում էապես բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը և իջեցնել արտադրանքի ինքնարժեքը։ Որոշ տեղերում պատշաճ ուշադրություն չի նվիրվում գյուղատնտեսական տեխնիկայի օգտագործման արդյունավետությունը բարձրացնելու հարցերին։ Թույլ են տրվում մեքենաների սահմանված ժամկետից շուտ դուրսգրման դեպքեր, ոչ նպատակային օգտագործման փաստեր, ցածր է դրանց շահագործման կուլտուրան։ Վիճակն անհամեմատ վատ է Մասիսի, Արագածի, Սիսիանի և այլ շրջանների տնտեսություններում։



Մեր առաջնահերթ խնդիրն է կոլտնտեսություններում ու սովխոզներում արագորեն արմատավորել նոր տեխնիկան, նպատակին օգտագործել եղած մեքենաներն ու մեխանիզմները, բարձրացնել մեքենայական պարկի օգտագործման արդյունավետությունը, հոգ տանել մեխանիզատորական կադրերի պատրաստման մասին։

Գյուղատնտեսության ինտենսիվացման հիմնական գործոններից մեկը հողագործության քիմիացումն է։

Իններորդ հնգամյակի տարիներին հանրապետության գյուղատնտեսությունը 1,5 անգամ ավելի հանքային պարարտանյութեր է ստացել, քան նախորդ հնգամյակում։ Սակայն շրջանային կուսակցական և տնտեսական առանձին ղեկավար աշխատողներ և մասնագետներ դեռևս անտեսում են գյուղատնտեսության քիմիացման նշանակությունը։ Այլապես ինչո՞վ բացատրել, որ հնգամյակի ընթացքում հանքային պարարտանյութերի օգտագործման ամենամյա պլանները զգալիորեն թերակատարվել են։ Այս տեսակետից վիճակն առանձնապես վատ է Մարտունու, Էջմիածնի, Ազիզբեկովի, Եղեգնաձորի, Արթիկի և մի քանի այլ շրջաններում։ Այս ամենից հետո հազիվ թե հարկ կա զարմանալ այդ շրջանների տնտեսություններում գյուղատնտեսական կուլտուրաների ցածր բերքատվության վրա։

Չի կարելի հաշտվել այն բանի հետ, որ գյուղատնտեսության մինիստրությունը, «Հայգյուղտեխնիկա» հանրապետական միավորումը շարունակում են պասսիվ, կարելի է ասել, հայեցողական դիրք գրավել արտադրության մեքենայացման և քիմիացման հարցերը լուծելիս, իրենց անելիքները սահմանափակելով միայն տնտեսություններին տեխնիկա և պարարտանյութ մատակարարելով։

Կուսակցության շրջանային կոմիտեներն ու սկզբնական կուսակցական կազմակերպությունները ևս պետք է լուրջ հետևություններ անեն և գործնական միջոցներ ձեռնարկեն յուրաքանչյուր տնտեսությունում մեքենայացման և քիմիացման հարցերը լրիվ լուծելու համար։

Ընկերնե՛ր։ Հանրապետության բնության, ինչպես նաև էռոզիայից հողերի պահպանության, ողողված հողերի վերականգնման միջոցառումների մեջ կարևոր նշանակություն է տրվում անտառամելիորատիվ աշխատանքների կոմպլեքսային իրականացմանը։

Հանրապետության անտառային տնտեսության պետական կոմիտեն տարիներ շարունակ հետևողական աշխատանք չի տարել այդ ասպարեզում։

Անտառային տնտեսության պետական կոմիտեն պարտավոր է կարճ ժամանակում վերացնել անտառամելիորատիվ աշխատանքների անցկացման գործում եղած թերությունները, վերջ տալ կապիտալ ներդրումների փոշիացման արատավոր պրակտիկային, ապահովել անհրաժեշտ քանակության տնկանյութի արտադրությունը։

Ելնելով հանրապետությունում անտառի պահպանության և նրա հետագա զարգացման ընդհանուր շահերից, պետք է կազմել անտառամելիորատիվ աշխատանքների գիտականորեն հիմնավորված, վերջնականապես ճշգրտված գլխավոր սխեմա, որը փոխադարձաբար շաղկապված լինի հողօտագործման և ջրատնտեսական աշխատանքների գլխավոր սխեմաների հետ։

Ընկերնե՛ր։ Կուսակցության որոշումներում բազմիցս մատնանշվել է կոլտնտեսությունների և սովխոզների էկոնոմիկայի ամրապնդման անհրաժեշտությունը։ Մինչդեռ աշխատանքային ծախսումները նվազեցնելու և աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, արտադրության ծախքերը կրճատելու և արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու, արտադրության շահութաբերությունը բարձրացնելու հարցերը դեռևս չեն դարձել մինիստրությունների ու գերատեսչությունների, շրջանային կուսակցական և գյուղատնտեսական մարմինների, գյուղատնտեսական արտադրության ղեկավարների, մասնագետների և սկզբնական կուսակցական կազմակերպությունների հատուկ ուշադրության առարկան։

ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը մեծ հոգատարություն ցուցաբերեցին հանրապետության կոլտնտեսությունների էկոնոմիկայի ամրա-

պայմանավորված են նաև նրանով, որ Հայկական ՍՍՀ տերիտորիայում գոր-
ծում են տարբեր գերատեսչությունների շինարարական և մոնտաժային շատ
թվով փոքր կազմակերպություններ: Բնական է, որ այդ սակավազոր կազմա-
կերպությունները զուրկ են շինարարության հարցերը ժամանակակից մակար-
դակով լուծելու հնարավորությունից: Դրանց խոշորացման ուղղությամբ որոշ
աշխատանք արդեն կատարվել է:
Կապիտալ շինարարության տեմպերը և որակը մեծապես կախված են նա-
խագծման կազմակերպման վիճակից և որակից: Հանրապետության նախա-
գծային կազմակերպությունները զգալի աշխատանք են կատարել կառույցները
նախագծային-նախահաշվային փաստաթղթերով ապահովելու ուղղությամբ:
Սակայն «Նախագծա-նախահաշվային գործի բարելավման մասին» ՍՄԿԿ
Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի հայտնի որոշման կատարման բնա-
գավառում դեռ կան լուրջ թերություններ: Հանրապետության պետշինը և նա-
խագծային կազմակերպությունները անբավարար են իրականացնում կուսակ-
ցության և կառավարության դիրեկտիվները՝ նախագծման որակը ժողովրդա-
կան տնտեսության արդի պահանջների և աշխատավորների կուլտուր-կենցա-
ղային պահանջմունքների մակարդակին հասցնելու մասին:
Առանձին դեպքերում արդյունաբերական նոր օբյեկտները նախագծվում
են առանց նախապես ապացուցելու արդեն գործող ձեռնարկությունների ընդ-
լայնման անհնարինությունը կամ աննպատակահարմարությունը: Հաճախ նա-
խագծերում նախատեսվում է հնացած տեխնոլոգիական պրոցեսների, սարքա-
վորումների և կոնստրուկտիվ լուծումների կիրառում: Շատ փաստեր կան, երբ
շինարարության ընթացքում հարկ է եղել վերանայելու նախագծային լուծում-
ները, վերակազմելու կամ վերահաստատելու նախահաշիվները, որը հանգեց-
րել է տեմպերի ու ժամանակի կորստյան:
Այսպես, Նաիրիի շրջանում խոշոր եղջերավոր անասունների աճեցման
կոմպլեքսի գործարկումը (Հայաստանի գյուղատնտեսական օբյեկտների նա-
խագծման պետական ինստիտուտ) պլանավորված էր 1975 թվականին: Առ
այսօր 7,4 միլիոն ռուբլի գումարով շինարարական-մոնտաժային աշխատանք-
ների նախահաշվային արժեքը խիստ իրացված է, բայց օբյեկտը շահագործ-
ման հանձնելու համար կպահանջվի ևս մոտավորապես 2,2 միլիոն ռուբլի կամ
30 տոկոսով ավելի:
Անցած 5 տարում, ոչ լրիվ տվյալներով, շինարարության ընթացքում հարկ
է եղել 171 օբյեկտների նախահաշվային արժեքը ավելացնել ավելի քան 250
միլիոն ռուբլի ընդհանուր գումարով:
Հանրապետության նախագծային կազմակերպությունների կողմից թո-
ղարկվող նախագծերում քիչ են կիրառվում նոր, թեթևացված և այլ արդյունա-
վետ կոնստրուկցիաներ ու դետալներ, որոնք բարելավում են շինարարության
որակը, բարձրացնում աշխատանքի արտադրողականությունը և իջեցնում շի-
նարարության արժեքը:
Նախագծման մասին խոսելիս հարկավոր է հատուկ կանգ առնել ճարտա-
րապետության վիճակի վրա: Պետք է նշել, որ Սովետական Հայաստանի ճար-
տարապետները որոշակի հաջողությունների են հասել ժամանակակից մոնու-
մենտալ կառույցվածքների ստեղծման գործում, որոնք թե՛ համապատասխա-
նում են իրենց ֆունկցիոնալ նշանակությանը և թե՛ ունեն զգալի արժեք՝ որ-
պես մարդկանց էսթետիկական, գաղափարական դաստիարակության միջոց:
Սակայն ճարտարապետության բնագավառում ևս լուրջ թերություններ կան:
Հանրապետության բնակավայրերի մի մասը չունի զարգացման և կառուցա-
պատման գիտականորեն հիմնավորված գլխավոր հատակագծեր: Դա հնարա-
վորություն չի տալիս կոմպլեքսայնորեն կառուցապատելու այդ բնակավայրե-
րը: Որոշ քաղաքների ու գյուղերի հատակագծման և կառուցապատման գոր-
ծում զգացվում է միապաղաղություն, շաբլոնի կնիքը, մանավանդ այն դեպ-
քերում, երբ նախագծերը հաշվի չեն նստում տեղանքի բնական յուրահատկու-
թյունների և ազգային ճարտարապետության առաջադիմական միտումների
հետ:
Աչքի է զարնում մի շարք նոր բնակելի զանգվածների ճարտարապետա-



կան լուծումների անճաշակությունը, ցածր որակը: Շատ զանգվածների և թա-
ղամասերի մանրամասն հատակագծման նախագծերը ժամանակին չեն կազմ-
վում, որի հետևանքով չի ապահովվում նոր և հին օբյեկտների անհրաժեշտ
համակցումը: Ճնշող տպավորություն են գործում բնակելի շատ տների և ամ-
բողջ անսամբլների դիմազուրկ միօրինակությունը, գորշությունը և անհրա-
պույր տեսքը: Է՛լ ավելի քիչ ուշադրություն է դարձվում արդյունաբերական և
գյուղատնտեսական շատ կառույցվածքների ճարտարապետական տեսքին:
Դրա հետ մեկտեղ, ճարտարապետները հաճախ անտեսում են շինարարության
էկոնոմիկայի հարցերը, թույլ են տալիս ավելորդություններ: Մյուս կողմից,
օգտվելով հանրապետության պետշինի բռնած հաշտվողական դիրքից, շինա-
րարական կազմակերպությունները, իրենց աշխատանքը թեթևացնելու նպա-
տակով, նախագծերը համաձայնեցնելիս հաճախ նվազագույնի են հասցնում
ճարտարապետների ստեղծագործական մտահղացումները:
Հանրապետության նախագծային կազմակերպություններում դեռևս թույլ
է պայքարը թողարկվող նախագծերի և նախահաշիվների որակի բարձրացման
գործում, չի ստեղծված ժամանակակից պահանջների տեսանկյունից նախա-
գծերի սկզբունքային, մասնագիտական քննարկման մթնոլորտ, անբավարար
են ուսումնասիրվում և արմատավորվում մյուս հանրապետությունների նա-
խագծողների դրական փորձն ու նվաճումները: Նախագծային ինստիտուտնե-
րում թույլ են արմատավորվում աշխատանքի գիտական կազմակերպումը,
էլեկտրոնային հաշվիչ մեքենաների կիրառումը, փաստաթղթերի կազմման ու
բազմացման ժամանակակից մեքենայացումը, միկրոնկարահանումը և էլեկ-
տրալուսանկարումը:
Վերջին տարիներս հանրապետությունում միութենական-հանրապետական
և հանրապետական մինիստրություններին առընթեր ստեղծվել են մեծ թվով
զանազան մանր նախագծային կոնստրուկտորական-տեխնոլոգիական կազ-
մակերպություններ, որոնք հանրապետական ենթակայության նախագծային
ինստիտուտներին զուգահեռաբար զբաղվում են նաև համաշինարարական նա-
խագծումով:
Այդ նույն ժամանակաշրջանում, դրանցից բացի, գոյացել են և գործում
են 20-ից ավելի նախագծային կազմակերպություններ՝ միութենական գլխա-
վորող ինստիտուտների մասնաճյուղեր և բաժանմունքներ:
Ստեղծված վիճակը հանգեցրել է միջոցների փոշիացման, ինժեներա-
տեխնիկական կադրերի պակասության, նախագծման գործում կրկնորդման ու
զուգահեռականության, կադրերի մեծ հոսունության:
Մանր նախագծային կազմակերպությունների վերացման հաշվին հանրա-
պետության առաջատար նախագծային ինստիտուտների խոշորացումը՝ դրանց
հստակ մասնագիտացմամբ հանդերձ, կնպաստի նախ և առաջ նախագծային-
նախահաշվային փաստաթղթերի որակի բարձրացմանը, պետական միջոցների
ավելի արդյունավետ օգտագործմանը, ժամանակակից կազմտեխնիկայի բա-
զայի վրա ինժեներա-տեխնիկական կադրերի աշխատանքի արտադրողակա-
նության բարձրացմանը, համատեղության արատավոր պրակտիկայի վերաց-
մանը, ինչպես նաև կհանգեցնի վարչակառավարչական ապարատի պահպան-
ման ծախսերի կրճատման:
Կապիտալ շինարարության բնագավառի խնդիրները ժամանակին կատա-
րելու համար հատուկ պատասխանատվություն է ընկնում քաղաքային և շրջա-
նային կուսակցական ու սովետական մարմինների վրա, որոնք պետք է ամեն-
օրյա վերահսկողություն սահմանեն շինարարության ընթացքի նկատմամբ, շի-
նարարների կոլեկտիվներին մոբիլիզացնեն ժողովրդատնտեսական օբյեկտնե-
րի գործարկման պլանների կատարման համար, ապահովեն պետական կար-
գապահության հստակ պահպանումը կառույցներում: Հաշվետու ժամանակա-
շրջանում կուսակցության մի շարք քաղաքային և շրջանային կոմիտեներ հա-
ջողությամբ են կատարել իրենց առջև դրված խնդիրները: Դրանց թվին են
պատկանում կուսակցության Երևանի քաղաքային, Ղափանի, Հոկտեմբերյանի,
Հրազդանի շրջանային կոմիտեները և այլ շրջանային կոմիտեներ: Սակայն կու-

սահմանափակ է: Բնակչության զգալի մասը հասարակական սննդի ծառայություններից չի օգտվում՝ սպասարկման ցածր կուլտուրայի, կերակուրների վատ որակի և սահմանափակ տեսականու պատճառով:

Էական թերություններ կան առևտրի կազմակերպման և բնակչության պահանջարկի ուսումնասիրության ասպարեզում: Անհրաժեշտ է ամրապնդել ու կատարելագործել արդյունաբերության և առևտրի միջև եղած տնտեսական կապերը: Ժողովրդական սպառման ապրանքներ թողարկող ձեռնարկությունները պետք է որոշեն այդ ապրանքների թողարկման ծավալը և տեսականին՝ ելնելով առևտրական կազմակերպությունների պատվերներից: Հարկավոր է բարձրացնել արդյունաբերական, գյուղատնտեսական և առևտրական կազմակերպությունների պատասխանատվությունը պայմանագրերի կատարման համար:

Հաշվետու ժամանակաշրջանում որոշակի աշխատանք է կատարվել բնակչության կենցաղային սպասարկումը բարելավելու ուղղությամբ: Կենցաղային սպասարկումների ծավալը մեծացավ 1,8 անգամ և կազմեց 52 միլիոն ռուբլի: Աշխատանք է կատարվել կենցաղի ծառայությունները մասնագիտացնելու և նրանց նյութատեխնիկական բազան ամրապնդելու ուղղությամբ: Ներկայումս բնակչությանը ցույց է տրվում շուրջ 500 տեսակի ծառայություն:

Սակայն սպասարկման ծավալի աճը ետ է մնացել հնգամյա պլանով նախատեսված մակարդակից, և թույլ է նրա նյութատեխնիկական բազան: Առանձին բնակավայրերում չկան կենցաղային սպասարկման օբյեկտներ: Ընդ որում, լրիվ չեն իրացվում կապիտալ շինարարության համար հատկացված միջոցները: Սպասարկման ոլորտը սահմանափակ է, չեն ստեղծվում բնակչության համար անհրաժեշտ մի շարք ծառայություններ, իսկ բնակարանների նորոգման կազմակերպումը խիստ անբավարար է կատարվում: Դեռևս ցածր է բնակչության մեկ շնչին ընկնող սպասարկումների ծավալը՝ տարեկան 18,36 ռուբլի, այդ թվում՝ գյուղական բնակչին ընկնող ծավալը կազմում է 9,66 ռուբլի: Դա զգալիորեն ցածր է միջին միութենական ցուցանիշներից: Գործուն միջոցներ չեն ձեռնարկվում կենցաղային սպասարկումը ինդուստրիալ ուղու վրա փոխադրելու համար: Անբավարար են օգտագործվում արտադրական կարողությունները ու հիմնական ֆոնդերը:

Բարելավվում է բնակչության ավտոտեխնիկական սպասարկումը, որը, 1970 թվականի համեմատությամբ, աճել է 4 անգամ:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը սպասարկման ոլորտի ղեկավարների, կուսակցական կոմիտեների և սկզբնական կուսակցական կազմակերպությունների ուշադրությունը հրավիրել է այդ սիստեմի առանձին օղակներում տեղ գտած բարձր պահանջարկ ունեցող ապրանքների սպեկուլյացիայի, մանրածախ և գնացուցակային գների խախտումների, գնորդներին խաբելու փաստերի և դրանց դեմ վճռական պայքար մղելու անհրաժեշտության վրա: Թեև այս ուղղությամբ որոշակի աշխատանք է կատարվել, այնուամենայնիվ, այդ երևույթները դեռ վերացված չեն և առաջ են բերում աշխատավորների դժգոհությունը:

Առևտրի, կենցաղային սպասարկման մինիստրությունները, Հայկոոպի վարչությունը, վերահսկող մարմինները և մի շարք այլ կուսակցական կոմիտեներ, հատկապես Երևան քաղաքի շրջկոմները, անհանդուրժելի անհետևողականություն և ձևականություն են ցուցաբերում սպասարկման ոլորտի բացասական երևույթների դեմ պայքար կազմակերպելու գործում:

Լրիվ թափով չի գործում բանվորական վերահսկողությունը: Բանվորական վերահսկիչների շատ դիտողություններ չեն կատարվում և ոչ ոք դրա համար պատասխանատվության չի ենթարկվում՝ ոչ սպասարկման ոլորտի գերատեսչությունների ղեկավարների կողմից, ոչ էլ շրջկոմների ու քաղկոմների կողմից:

Պայքարը մշտապես չի մղվում և կամպանիոն բնույթ է կրում, մինչդեռ այդ կամպանիաների միջև ընկած շրջանում ավելի լկտիաբար են գործում սպեկուլյանտները, գողերը, խաբեբաները, շարունակում են տեղ գտնել սովետական առևտրի կանոնների և կենցաղային սպասարկման գնացուցակների տարիֆների խախտումներ, գնորդների նկատմամբ կոպիտ վերաբերմունք:



Անհրաժեշտ է, որ կուսակցական կոմիտեները և կենցաղային սպասարկման ոլորտի ղեկավարները, ներքին գործերի մինիստրությունը, բոլոր վերահսկիչ մարմինները համապատասխան հետևություններ անեն քննադատությունից և չարաշահումների ու խաբեբայությունների դեմ պայքարը կազմակերպեն լայն ճակատով, մեծ հետևողականությամբ ու բարձր արդյունավետությամբ: Հարկավոր է հատուկ ուշադրություն դարձնել այդ կեղտոտ գործերի պարագլուխների և կազմակերպիչների մերկացման և խստագույնս պատժելու վրա, նրանց, ովքեր գործում են՝ ճարպկորեն քողարկվելով, խախտումների մղելով շարքային աշխատողներին:

Հարկավոր է ամրապնդել սպասարկման ոլորտի ղեկավար կադրերը, սպասարկման սիստեմը մաքրել վստահություն չվայելող, նախկինում աշխատանքում վարկաբեկված անձանցից: Չի կարելի թույլ տալ, որ մի բուռ խաբեբաներ արատավորեն առևտրի և կենցաղի աշխատողների բարի անունը:

Անհրաժեշտ է պետական պատշաճ կարգ ու կանոն հաստատել սպասարկման բոլոր օբյեկտներում:

Իններորդ հնգամյակի տարիներին կուսակցության և կառավարության մշտական հոգատարության շնորհիվ մեր առողջապահությունը նոր նշանակալի զարգացում ստացավ: Ընդլայնվեց սանատորակուրորտային օբյեկտների ցանցը: Շարք մտան նոր հիվանդանոցներ, պոլիկլինիկաներ և բժշկական այլ հիմնարկներ: Կատարվեց հիվանդանոցային մահճակալների հետագա մասնագիտացում:

Հանրապետության բժշկական հիմնարկներում աշխատում են ավելի քան 9,4 հազար բժիշկ և ավելի քան 22.000 միջին բուժաշխատող: Բժիշկներով ապահովված լինելու տեսակետից մեր հանրապետությունը երկրում առաջին տեղերից մեկն է գրավում: Բժշկական մի շարք հիմնարկներում ներդրվել են բնակչությանը բժշկական օգնություն կազմակերպելու նոր ձևեր:

Դրական որոշակի տեղաշարժեր կան հիվանդանոցային-պոլիկլինիկական սպասարկման, մոր և մանկան պահպանության, առանձին վարակիչ հիվանդությունների նվազեցման ու վերացման ասպարեզում:

Դրա հետ մեկտեղ առողջապահության մարմինների և բժշկական հիմնարկների գործունեության մեջ դեռևս կան լուրջ թերություններ, խախտումներ և չլուծված հարցեր:

Դեռևս անհրաժեշտ բարձրության վրա չի գտնվում շատ հիվանդանոցներում և պոլիկլինիկաներում ցույց տրվող բժշկական օգնության մակարդակը: Վերջին տարիներս կազմակերպված որոշ մասնագիտացված բաժանմունքներ ու հիվանդանոցներ հաճախ չեն կիրառում հետազոտման և բուժման արդիական մեթոդներ:

Սանիտարական վերահսկողության մարմինները պատշաճ պահանջկոտություն չեն ցուցաբերում ձեռնարկությունների և հիմնարկների ղեկավարների նկատմամբ, պատասխանատվության չեն ենթարկում ջրավազանների և հողի սանիտարական ռեժիմի խախտման, մթնոլորտի աղտոտման մեղավորներին:

Առողջապահության մարմինների մի շարք ղեկավարներ և հիվանդանոցների գլխավոր բժիշկներ միջոցներ ձեռք չեն առնում ամենօրյա պրակտիկայում արմատավորելու բժշկական սպասարկման ժամանակակից, առավել արդյունավետ մեթոդները:

Բժշկական առանձին կոլեկտիվներ չափազանց դանդաղ են վերակառուցում իրենց աշխատանքը, գործուն միջոցներ չեն ձեռնարկում հիվանդների նկատմամբ ապահովելու զգայուն ու հոգատար վերաբերմունքը, բուժական էթիկայի նորմաների կիրառումը, արմատախիլ անելու բժշկական հիմնարկություններում դեռևս տեղ գտած բացասական երևույթները:

Իններորդ հնգամյակում հանրապետությունում հետագա զարգացում ստացան ֆիզկուլտուրան և սպորտը: Մասսայական ֆիզկուլտուրային-սպորտային շարժման զարգացման գործում անվիճելի հաջողությունների հետ մեկտեղ, կան լուրջ թերություններ: Ընդհանուր առմամբ, հանրապետությունում ֆիզկուլտուրայի և սպորտի վիճակը մեզ ամենևին էլ չի բավարարում:

տանքի և աշխատավորների քաղաքական դաստիարակության հարցերի մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշումների և ցուցումների իրականացմանը։ Մեր գաղափարական գործունեության միջուկը եղել և մնում է մարքսիզմ-լենինիզմի անմահ գաղափարների խոր պրոպագանդան աշխատավորների և երիտասարդության բոլոր խավերում։

Հաշվետու ժամանակաշրջանում աշխատանք է կատարվել կուսակցական լուսավորության ցանցի, կադրերի տնտեսագիտական կրթության և ուսուցման գործի հետագա կատարելագործման ուղղությամբ։

Կուսակցական ուսուցման բոլոր օղակներում ընդգրկված է 155.300 մարդ, կոմերիտական քաղլուսցանցում՝ 143.000 մարդ, տնտեսագիտական կրթության ցանցում՝ 83.840 մարդ։ Նկատելիորեն բարելավվել է մարքսիզմ-լենինիզմի համալսարանների գործունեությունը։ Սկսել են ավելի հաճախ անցկացվել քաղաքային, շրջանային, հանրապետական գիտագործնական և գիտամեթոդական կոնֆերանսներ։

Սակայն այդ աշխատանքում շարունակում են տեղ գտնել թերություններ, որոնց մասին ասվել է բազմիցս. ֆորմալիզմի և մակերեսայնության տարրեր, գործի թափը անցկացվող միջոցառումների թվով որոշելու ձգտում, անտեսելով դրանց որակը, գիտատեսական և դաստիարակչական պոտենցիալը, որոշ դեպքերում ցածր գաղափարատեսական մակարդակը, ուսումնասիրվող պրոբլեմների կտրվածություն տվյալ կոլեկտիվի, շրջանի, քաղաքի առջև կանգնած խնդիրներից և այլն։ Այս և ուրիշ թերություններ գոյություն ունեն մի ամբողջ շարք կազմակերպություններում։

Կուսակցական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում են գտնվել աշխատավորության մեջ աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակման, արտադրական կարգապահության, կարգ ու կանոնի պահպանման, կազմակերպվածության բարձրացման հարցերը, նկատի ունենալով, որ այդ բոլորը արտադրության ոլորտում հայտնի չափով անդրադառնում են նրա արդյունավետության բարձրացման վրա։

Հիմնական օղակը, որտեղ առավել ինտենսիվ կերպով է իրագործվում աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ձևավորման պրոցեսը, արտադրական կոլեկտիվն է։

«Դա սովետական մարդկանց աշխատանքային և հասարակական ակտիվությունը բարձրացնելու պայքարի կարևոր ասպարեզ է,— ընդգծել է ընկ. Լ. Ի. Բրեժնևը։— Այստեղ են ձևավորվում աշխատավորների նոր, սոցիալիստական հատկությունները, ստեղծվում բարեկամության և ընկերական փոխօգնության հարաբերությունները»։

Մեզանում քիչ չեն այնպիսի կուսակցական կազմակերպությունները, որոնք հմտորեն ուղղություն են տալիս աշխատանքային կոլեկտիվների աշխատանքին, օգտագործում գաղափարա-քաղաքական, բարոյա-հոգեբանական, կազմակերպական, տեխնիկա-տնտեսական և մյուս գործոնները փոխգործողության մեջ, աշխատում կոլեկտիվում ստեղծել իսկական ընկերականության, փոխօգնության և պահանջկոտության մթնոլորտ, թերությունների, աշխատանքային կարգապահության և կոմունիստական բարոյականության նորմաների խախտումների նկատմամբ անհաշտության մթնոլորտ։

Անհրաժեշտ է ուսումնասիրել, ընդհանրացնել և աշխատանքի պրակտիկայում արմատավորել աշխատանքային կոլեկտիվների դերի բարձրացման ասպարեզում լավագույն կուսկազմակերպությունների փորձը, ամեն մի աշխատողի ներարկել իր ձեռնարկության նկատմամբ սիրո, պրոֆեսիոնալ հպարտության, թողարկվող արտադրանքի, գործարանի մակնիշի պատվի համար պատասխանատվության զգացում։

Աշխատանքային դաստիարակության գործում հսկայական դեր է պատկանում այն մարդու հեղինակությանը, որն իր ոգեշունչ աշխատանքով բարոյական իրավունք է նվաճել դաստիարակ կոչվելու և երիտասարդ բանվորական հերթափոխին հաղորդելու կոլեկտիվի պրոֆեսիոնալ ու բարոյական փորձը։ Անհրաժեշտ է է՛լ ավելի լայնորեն տարածել վարպետ-դաստիարակների շար-



ժումը, դրան տալ մասսայական բնույթ, կազմակերպել նրանց առաջավոր փորձի պրոպագանդումը։

Գաղափարական-դաստիարակչական աշխատանքի արդյունավետության գլխավոր չափանիշը կուսակցությունը իրավամբ համարում է աշխատավորների աշխատանքային և հասարակական-քաղաքական ակտիվությունը։

Կուսակցական կազմակերպությունները, վերացնելով ագիտատորների, քաղինֆորմատորների, դասախոսների ու զեկուցողների աշխատանքում, ցուցադրական ագիտացիայի դրվածքում և մեր ամբողջ մասսայական-քաղաքական գործունեության մեջ տեղ գտած թերությունները, իրենց աշխատանքը պետք է ուղղեն նախ և առաջ այդ գլխավոր խնդրի իրագործմանը՝ դրան ենթարկելով բանավոր ու տպագիր պրոպագանդայի բոլոր միջոցներն ու ձևերը, բոլոր գիտելիքները, ուժն ու կարողությունը։

Մեր պրոպագանդայի, գաղափարադաստիարակչական ամբողջ աշխատանքի արդյունավետության բարձրացումը, ինչպես դա ընդգծված է «Բելոռուսիայի կուսակցական կազմակերպությունում գաղափարական կադրերի հետ տարվող աշխատանքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, ենթադրում է գաղափարական ճակատի աշխատողների կողմից տնտեսական պրոբլեմների, տեղերում տիրող ռեալ իրավիճակի խոր իմացություն, ետ մնալու պատճառները և արտադրության զարգացման հեռանկարները տեսնելու և իր գործունեությունը կուսակցության սոցիալ-տնտեսական քաղաքականության անշեղ իրականացման նպատակին ուղղելու հմտություն։

Կյանքը հրամայաբար պահանջում է գիտական մոտեցում ցուցաբերել կուսակցական կազմակերպությունների գաղափարադաստիարակչական գործունեության կազմակերպման նկատմամբ։ Գաղափարական գործունեության նկատմամբ գիտական մոտեցումը ենթադրում է նախ և առաջ ստեղծել դաստիարակչական աշխատանքի կոմպլեքսային սիստեմ, որն ընդգրկի մարդկանց կյանքի կողմերի ամբողջ բազմազանությունը, հաշվի առնի նոր մարդու ձևավորման օբյեկտիվ պայմաններն ու սուբյեկտիվ գործոնները։ Այդ հիման վրա պետք է կառուցվի մեր ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքը, մեր ողջ գաղափարական գործունեությունը։ Հանրապետությունում տնտեսական ու կուլտուրական շինարարության ղեկավարումը բարելավելու գործում ծայր առած բեկումը, մարդկանց հոգեբանության մեջ հայեցողականությունից ու պասսիվությունից դեպի հասարակական-քաղաքական ակտիվություն սկսված շրջադարձը պետք է ուղեկցվի նաև արմատական փոփոխություններով գաղափարական աշխատանքի կազմակերպման, նրա մակարդակի և որակի բարձրացման ասպարեզում։

Առանձնահատուկ նշանակություն է ստանում կուսակցական կազմակերպությունների մշտական հոգատարությունը սոցիալիստական մրցության հետագա զարգացման նկատմամբ, որը զարգացած սոցիալիզմի պայմաններում վերածվել է մասսաների՝ իր թափով ու խորությամբ վիթխարի սոցիալական ու քաղաքական ստեղծագործության։ Վերլուծելով աշխատանքի արդյունքները, կարելի է ամենայն որոշակիությամբ ասել, որ հաջողությունն ուղեկցել է նախ և առաջ այն կազմակերպություններին, ուր մրցության դաստիարակչական պոտենցիալի աճը առնչվել է, ամբողջությամբ վերցրած, նրա մակարդակի և թափի բարձրացման հետ, այդ համաժողովրդական շարժման ղեկավարման նկատմամբ գիտական մոտեցման հետ, արդյունքների հրապարակայնության, համադրելիության, փորձի կրկնման հնարավորության լենինյան սկզբունքների ստեղծագործական կիրառման հետ։

Մենք դեռ շատ բան պետք է անենք բարձրացնելու մրցության սոցիալ-տնտեսական և դաստիարակչական արդյունավետությունը, նրա մոբիլիզացնող հասարակական դերը։ Այս ասպարեզում կուսակցական կազմակերպությունների աշխատանքի սուր ծայրը առաջին հերթին պետք է ուղղվի շատ կոլեկտիվներում արմատացած ձևամոլության դեմ։ Մենք չենք կարող հաշտվել այն բանի հետ, որ սոցիալիստական մրցության բուն էությունը՝ առանձին աշխատողների, կոլեկտիվների, շրջանների ու քաղաքների իսկական աշխատանքային

մրցակցությունը մի շարք տեղերում փոխարինվում է թղթարարությամբ, ցուցամոլությամբ։ Ձևական մոտեցումը այն հիմնական չարիքն է, որ ամլացնում է սոցիալիստական մրցությունը։ Ավելին, վարկաբեկում է նրա վեհ գաղափարը։

Անհրաժեշտ է հիմնովին արմատախիլ անել այն պրակտիկան, երբ ձեռնարկությունների, մինիստրությունների ու գերատեսչությունների առանձին ղեկավարներ, թաքցնելով նշանակալի ռեզերվներ ու հնարավորություններ, եռանդուն կերպով հասնում են նվազեցված պլանների, իսկ ապա ստանձնում «բարձր» պարտավորություններ, «հաջողությամբ» կատարում դրանք և հիշատակվում մրցության հաղթողների ցանկում։ Այդ պրակտիկան վնասակար էր ոչ միայն տնտեսական տեսակետից, այլև բացասաբար էր անդրադառնում մարդկանց դաստիարակության վրա։

Երևան, Կիրովական քաղաքների, Իջևանի շրջանի մի շարք կուսկազմակերպություններում ագիտացիոն-մասսայական աշխատանքը միշտ չէ, որ հմտորեն օգտագործվում է պլանային առաջադրանքները և ստանձնած սոցիալիստական պարտավորությունները ժամկետից շուտ կատարելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, արտադրության որակական ցուցանիշները բարելավելու, ռեզերվներն ավելի լրիվ օգտագործելու, կազմակերպվածությունն ու կարգապահությունը ամրապնդելու նպատակով աշխատավորներին մոբիլիզացնելու համար։

Մեր խնդիրն է՝ առավելագույն չափով կոնկրետացնել և ավելի նպատակասլաց բնույթ տալ ագիտացիոն-մասսայական աշխատանքին, բարձրացնել նրա մակարդակն ու արդյունավետությունը՝ արտադրական, հասարակական և մեր կենսագործունեության մյուս բնագավառներում։

ՀԿԿ Կենտկոմը մշակել և իրականացնում է կոմպլեքս միջոցառումներ աշխատավորների ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակության ասպարեզում։ Օգտագործելով մասսաների վրա գաղափարաբարոյական ներգործության բազմազան ձևերն ու միջոցները, հանրապետության կուսակցական կազմակերպությունները ձգտում են վառ ու համոզիչ կերպով ցույց տալ մեր երկրի ժողովուրդների հաջողություններն ու նվաճումները տնտեսական ու կուլտուրական շինարարության նախատեսված պլանների կատարման գործում, բացահայտել սոցիալիստական ազգերի եղբայրական համագործակցության ու փոխօգնության, կոմունիստական կուսակցության լենինյան իմաստուն ազգային քաղաքականության կենարար ուժն ու նշանակությունը, այդ քաղաքականության մեծագույն հաղթանակը մեր երկրում և նրա հսկայական ձգողական ուժը ամբողջ աշխարհի ժողովուրդների համար։

Մեր հանրապետության աշխատավորները իրենց պատմական փորձից գիտեն, որ այն ամենը, ինչ կազմում է վերածնված Սոցիալիստական Հայաստանի հպարտությունն ու պատիվը, մեր բոլոր նվաճումներն ու հաջողությունները, ՍՄԿԿ-ի լենինյան իմաստուն ազգային քաղաքականության, սովետական ժողովուրդների եղբայրական համագործակցության, նրանց սերտ միասնության և փոխադարձ օգնության արգասիքն են։ Հայաստանի կոմկուսի և հանրապետության յուրաքանչյուր կոմունիստի, յուրաքանչյուր քաղաքացու վեհ պարտքն է աչքի լույսի պես պահպանել մեր եղբայրական դաշինքը, բազմապատկել նրա կենարար ուժն ու անխորտակելի հզորությունը։ (Ծափահարություններ)։

Մեր ժողովուրդը բարեկամության ու եղբայրության անկապտելի թելերով առհավետ կապված է ռուս մեծ ժողովրդի հետ, մեր մեծ հայրենիքի բոլոր եղբայրական ժողովուրդների հետ։ Ռուս ժողովուրդն իր հեղափոխական եռանդի, անձնվիրության, աշխատասիրության, ինտերնացիոնալիզմի համար վաստակել է մեր երկրի բոլոր ժողովուրդների, այդ թվում նաև հայ ժողովրդի խորին սերն ու հարգանքը։ Հավերժական կլինի հայ ժողովրդի երախտագիտությունը իր մեծ եղբոր՝ ռուս ժողովրդի նկատմամբ, որը հիրավի վճռական դեր խաղաց նրա ազգային և սոցիալական ազատագրության, սոցիալիստական և կոմունիստական շինարարության գործում։ (Ծափահարություններ)։



1978 թվականին հայ ժողովուրդը, հանրապետության բոլոր աշխատավորները հանդիսավորությամբ կնշեն Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միանալու 150-ամյակը։ Պատմական այդ նշանավոր իրադարձությունը, որը շրջադարձային կետ հանդիսացավ հայ ժողովրդի ճակատագրում, նրան փրկեց ֆիզիկական ոչնչացումից, որոշեց նրա տնտեսական, քաղաքական, կուլտուրական հետագա զարգացման ուղիները, ամրապնդեց երկու ժողովուրդների դարավոր բարեկամական կապերը, մեր ժողովրդին լիակատար հնարավորություն տվեց ակտիվորեն մասնակցելու Ռուսաստանի պրոլետարիատի հեղափոխական պայքարին։

Մենք այդ նշանակալի հոբելյանը կնշենք որպես բարեկամության ու եղբայրության համաժողովրդական տոն, որպես հայ և ռուս ժողովուրդների անխախտ միասնության տոն, միասնություն, որը մեր երկրի բոլոր ազգերի ու ազգությունների եղբայրական ընտանիքում մեր նոր մեծագործությունների ու հաղթանակների երաշխիքն է։ (Ծափահարություններ)։

Սոցիալիստական ազգերի փոխգործակցության և փոխհարստացման, նրանց մերձեցման գործում հսկայական դեր է խաղում ռուսաց լեզուն։ Հասարակական-քաղաքական մտքի զարգացումը, գիտատեխնիկական առաջընթացը, կուլտուրայի, հասարակության ամբողջ հոգևոր կյանքի հետագա զարգացումը զգալի չափով պայմանավորված են ռուսաց լեզվի խոր իմացությամբ և օգտագործմամբ։ Նրա՝ որպես ազգամիջյան հաղորդակցման միջոցի, լայն տարածումը, օբյեկտիվ, օրինաչափ պրոցես է։ Մեր հանրապետությունում, հայոց լեզվի զարգացման ու հարստացման նկատմամբ ցուցաբերվող հոգատարության հետ մեկտեղ, մշտական աշխատանք է տարվում աշխատավորության, հատկապես երիտասարդության կողմից ռուսաց լեզվին տիրապետելու ուղղությամբ։ Կուսակցական կազմակերպությունների, ժողովրդական կրթության աշխատողների, մասսայական ինֆորմացիայի միջոցների, ստեղծագործական միությունների և կազմակերպությունների խնդիրն է է՛լ ավելի ակտիվացնել ռուսաց լեզվի տարածման աշխատանքը, ըստ ամենայնի նպաստել ամենուրեք նրա սիստեմատիկ և խորը ուսումնասիրությանը, ինչպես նախատեսված է ՀԿԿ Կենտկոմի հայտնի որոշմամբ։

Անհրաժեշտ է մշտապես կատարելագործել աշխատավորներին ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության ոգով դաստիարակելու աշխատանքը։ Այդ խնդիրը մեր առջև դնում է բուն կյանքը, մեր սոցիալիստական իրականությունը։ Կուսակցությունը ուսուցանում է, որ ինտերնացիոնալիզմի գաղափարները միայն այն ժամանակ են դառնում նյութական ուժ, երբ, տիրապետելով մասսաներին, դառնալով համոզմունք, բարոյական ու հոգեբանական նորմա, դրսևորվում են կենսագործունեության բոլոր ոլորտներում՝ աշխատանքում, կենցաղում, մարդկանց փոխհարաբերություններում։ Հենց դա էլ անհրաժեշտ է դարձնում, որ կուսակցական կազմակերպությունները մշակեն կյանքի բոլոր ոլորտներն ընդգրկող ինտերնացիոնալ դաստիարակության ուղղությամբ տարվող աշխատանքի կոմպլեքսային սիստեմ։ Պետք է աչքաթող չանել, որ քաղաքականապես տհաս առանձին մարդկանց մեջ երևան են գալիս ազգային սնապարծության և պարծենկոտության փաստեր, որոնք հակասում են մեր ժողովրդի սովետական հայրենասիրության անկեղծ ու խոր զգացմունքներին։

Ինտերնացիոնալ դաստիարակության ամբողջ աշխատանքը պետք է յուրաքանչյուր մարդու մեջ ամրապնդի մեր մեծ հայրենիքի ժողովուրդների միասնական ընտանիքի զգացմունք, ինտերնացիոնալիստական գաղափարներ, որոնք տիրապետում են մտքին, իրենց ենթարկում համոզմունքները և դառնում նրա կյանքի ու գործունեության հավատամքը։

Ինտերնացիոնալիստական համոզմունքների և բարոյական սկզբունքների ձևավորումը անխզելիորեն կապված է աշխատավորներին սովետական հայրենասիրության ոգով, իր սոցիալիստական հայրենիքի, իր ժողովրդի, նրա մեծագործությունների համար հպարտության ոգով դաստիարակելու հետ։

Սովետական հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի միասնությունը պահանջում է տեղական խնդիրները մշտապես զուգակցել

համապետական խնդիրների հետ, վճռականապես խափանել բոլոր, նույնիսկ այն առանձին փորձերը, որոնց նպատակն է նեղ ընկալված տեղական շահերը հակադրել ամբողջ սովետական ժողովրդի շահերին։ Հենց դրանում պետք է դրսևորվի և դրսևորվում է մեր ազգային ինքնագիտակցությունը, ազգայինի և ինտերնացիոնալիզմի ներդաշնակությունը, նրանց լիակատար կենսահաստատումը։

Ընկ. Լ. Ի. Բրեժնևը Երևանում, Հայկական ՍՍՀ 50-ամյակի առթիվ արտասանած իր ճառում, նշեց, որ հայ ժողովրդի մեջ իր «հանրապետության նկատմամբ հայրենասիրական բարձր ոգին, հայերի, ինչպես որ սովետական մյուս բոլոր ժողովուրդների մեջ, զուգորդվում է առավել լայն առումով հայրենասիրության ոգու հետ, մեր ընդհանուր մեծ սոցիալիստական հայրենիքի՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների նկատմամբ նվիրվածության ու սիրո հետ»։

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարի այդ խոսքերը խորապես և հաստատուն կերպով տպավորվել են մեր հանրապետության յուրաքանչյուր քաղաքացու սրտում և հոգում, որպես նրա խոհերի և իղձերի բարոյա-քաղաքական բարձր գնահատականը, որպես կոչ է՛լ ավելի ամրապնդելու սովետական համազգային հպարտության վեհ զգացմունքները։ (Ծափահարություններ):

Մեր համագումարը հանդիսավոր կերպով հավաստիացնում է ՍՄԿԿ Կենտկոմին, որ Հայաստանի կոմկուսը այսուհետև ևս այդ ոգով կդաստիարակի աշխատավորներին և աչքի լույսի պես կպաշտպանի, անբիծ կպահի և հետևողականորեն կկենսագործի կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականությունը։ (Ծափահարություններ):

Իմպերիալիստական պրոպագանդան քիչ ջանքեր չի գործադրում, որպեսզի մեր մարդկանց գիտակցությունը թունավորի մեր հասարակարգի նկատմամբ զրպարտության թույնով, պրոլետարական ինտերնացիոնալիզմին հակադրի բուրժուական նացիոնալիզմը, զանազան ռասիստական կոնցեպցիաներ։

Մեր գաղափարական գործունեության սուր ծայրը պետք է ուղղված լինի բուրժուական գաղափարախոսության, զանազան աջ և «ձախ» ռևիզիոնիստների, դաշնակցության գաղափարախոսության և պրակտիկայի հակաժողովրդական էությունը մերկացնելու նպատակին, ուղղված լինի այն ամենի դեմ, ինչ նույնիսկ նվազագույն չափով կարող է խանգարել աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակությանը։

Այդ գործում հատկապես աճում է մասսայական բանավոր և տպագիր պրոպագանդայի միջոցների, գրականության և արվեստի դերը։ Աշխատավորների, հատկապես երիտասարդության, ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակությունը անխզելիորեն կապված է սովետական ժողովրդի հեղափոխական, մարտական և աշխատանքային ավանդույթների, սովետական ապրելակերպի պրոպագանդայի հետ։ Սովետական մարդկանց տարբեր սերունդների ձգտումների ու նպատակների, մեծագործությունների ու պայքարի, արիության ու հերոսության թեման պետք է այսուհետև ևս կարևոր տեղ գրավի մեր պրոպագանդայի բոլոր միջոցների գործունեության բովանդակության մեջ։ Անհրաժեշտ է հատուկ ուշադրություն դարձնել աշխատավորների ռազմահայրենասիրական դաստիարակությանը, սովետական բանակի մարտիկների հետ նրանց ավանդական կապերի ամրապնդմանը։

Պրոպագանդիստական աշխատանքում մենք մշտապես պետք է հաշվի առնենք, որ խաղաղ գոյակցության քաղաքականության հաստատման պայմաններում է՛լ ավելի է սրվում գաղափարական պայքարը։ Ուստի գաղափարական աշխատանքի կարևոր ուղղություններից մեկը ինֆորմացիոն գործունեությունն է, որը նպատակ ունի արտասահմանյան երկրների լայն հասարակայնությանը հասցնել ճշմարտությունը Սովետական Միության, կոմունիստական շինարարության բոլոր բնագավառներում մեր ժողովրդի ձեռք բերած հսկայական նվաճումների մասին, մեր երկրի խաղաղասիրական արտաքին քաղաքականության մասին, ՍՄԿԿ XXIV համագումարի նախանշած խաղաղության ծրագրի իրականացման մասին։

Մենք մեծ նշանակություն ենք տվել և այսուհետև էլ կտանք սփյուռքահայ



հայրենակիցների հետ կուլտուրական կապերի զարգացմանն ու ամրապնդմանը։ Նրանց գերակշռող մեծամասնությունը հայրենասիրական զգացմունքներ է տածում Սովետական Հայաստանի նկատմամբ, խորին հարգանք ու համակրանք՝ Սովետական Միության նկատմամբ, որի կազմում մեր ժողովուրդը ձեռք բերեց իր սոցիալիստական պետականությունը և լիակատար հնարավորություն ստացավ համակողմանի զարգացման ու ծաղկման համար։

Սփյուռքահայ առաջադեմ հասարակայնությունը լայնորեն արձագանքում է սովետական երկրի կյանքում տեղի ունեցող իրադարձություններին, պաշտպանում է ՍՍՀՄ-ի խաղաղասիրական արտաքին քաղաքական կուրսը։ Մի շարք երկրներում հայ առաջադիմական կազմակերպությունների նախաձեռնությամբ հանդիսավորությամբ նշվեցին ՍՍՀՄ-ի կազմավորման կեսդարյա հոբելյանը, Հայաստանում սովետական իշխանության հաստատման 50-ամյակը, ֆաշիստական Գերմանիայի դեմ սովետական ժողովրդի տարած հաղթանակի 30-ամյակը և այլ նշանավոր իրադարձություններ։

Անհրաժեշտ է այսուհետև ևս ավելի ակտիվորեն սփյուռքահայ աշխատավորների լայն մասսաներին հասցնել ճշմարտությունը Սովետական Միության, այդ թվում մեր հանրապետության գործերի ու առօրյայի մասին, ՍՄԿԿ-ի լենինյան իմաստուն ազգային քաղաքականության, սովետական ժողովուրդների բարեկամության ու եղբայրական փոխօգնության շնորհիվ ձեռք բերած հաջողությունների մասին, բացահայտել մեր երկրի ու հանրապետության հետագա զարգացման ու բարգավաճման հեռանկարները, մշտապես մերկացնել և գործուն հակահարված տալ դաշնակցության պարագլուխներին ու գաղափարախոսներին, նրանց ծախու մամուլին, որոնք ծառայելով միջազգային հակակոմունիզմին և դավաճանելով հայ ժողովրդին, կտրաբար զրպարտում են Սովետական Հայաստանի և մեր մեծ հայրենիքի իրականությունը։

Հայ ժողովրդի նկատմամբ Սովետական Միության կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության հսկայական հոգատարության դրսևորումն է սփյուռքահայերի շարունակվող հայրենադարձությունը, որն սկըսվեց Հայաստանում սովետական իշխանության հաստատումից անմիջապես հետո։ Հայրենիք վերադառնալով, դառնալով ՍՍՀՄ-ի լիիրավ քաղաքացիներ, նրանք ակտիվորեն ներգրավվել են սովետական ժողովրդի խաղաղ, ստեղծարար աշխատանքում։ Նրանցից շատերը աշխատում են կուսակցական, սովետական, տնտեսական ղեկավար մարմիններում, Գերագույն սովետի և աշխատավորների դեպուտատների տեղական սովետների դեպուտատներ են, լայնորեն դրսևորում են իրենց ունակությունները արտադրության, գիտության մեջ, կուլտուրայում, արվեստում և մեր կյանքի մյուս բնագավառներում։

Ընկերնե՛ր։ Ամենօրյա գաղափարական-դաստիարակչական գործունեության մեջ մենք մշտապես պետք է ելնենք լենինյան այն պահանջից, որ գաղափարախոսության ոլորտում չեն կարող զիջումներ լինել թշնամական պրոպագանդային, մարքսիզմի ամեն տեսակ խեղաթյուրումներին։

Գաղափարական աշխատանքի նկատմամբ լենինյան մոտեցումը պահանջում է միշտ և ամենուրեք՝ գործնական հարցերը լուծելիս, կյանքի փաստերը գնահատելիս և երևույթները վերլուծելիս, մեր արարքներում և գործերում ելնել դասակարգային շահերից։ «...հարցը միայն այսպես է դրված,— գրել է Վ. Ի. Լենինը,— բուրժուական կամ սոցիալիստական գաղափարախոսություն։ Այստեղ միջինը չկա»։

Կուսակցականության և դասակարգայնության լենինյան սկզբունքները մեր պրոպագանդայի և կուսակցական կազմակերպությունների գաղափարական ամբողջ գործունեության հիմնարար սկզբունքներն են։ Դրանց անշեղ իրականացման հետ է կապվում նաև գիտության, գրականության և արվեստի, հոգևոր գործունեության մյուս ոլորտների հետագա զարգացումը։

Հանրապետության հասարակական-քաղաքական կյանքում կարևորագույն իրադարձություն կլինի Հայաստանի կոմկուսի Կենտկոմի որոշմամբ Վ. Ի. Լենինի Երկերի լիակատար ժողովածուի հրատարակումը հայերեն լեզվով, որի առաջին 5 հատորները արդեն լույս են տեսել։ Հրատարակվել են Կ. Մարքսի և

Վ. Ի. Լենինի գիտական կենսագրությունները հայերեն լեզվով, Հայկական սովետական հանրագիտարանի առաջին հատորը և այլ աշխատություններ:

Հայաստանի գիտնականները վերջին տարիներս ստեղծել են ոչ քիչ թվով խոշոր հետազոտություններ, մենագրություններ հասարակական գիտությունների բնագավառում, որոնք հիմնված են մարքս-լենինյան հստակ մեթոդոլոգիական չափանիշների վրա:

Թեև հանրապետությունում քիչ աշխատություններ չեն հրատարակվել այդ գիտությունների պրոբլեմների վերաբերյալ, սակայն դրանց մակարդակը միշտ չէ, որ համապատասխանում է ներկայացվող պահանջներին: Խոսքը վերաբերում է ամենից առաջ որոշ հետազոտությունների մեթոդոլոգիական թուլությանը, վերլուծության մակերեսայնությանը, տեսական խոր ընդհանրացումների բացակայությանը: Առանձին դեպքերում նկատվում է չարդարացված հրապուրանք անցյալով:

Այս կամ այն գաղափարների, կոնցեպցիաների, երևույթների, փաստերի, ավանդույթների գնահատման ժամանակ դասակարգային սուրությունը, հստակությունն ու որոշակիությունը առանձին հետազոտություններում և գիտական հրապարակումներում փոխարինվում է անորոշությամբ: Որոշ աշխատանքներում ջնջվում են կուսակցական-դասակարգային կողմնորոշիչները պատմական երևույթների և անցյալի գործիչների գնահատության հարցում:

Հասարակական գիտությունների ինստիտուտների և ամբիոնների գլխավոր ուշադրությունը այսուհետև ևս պետք է կենտրոնացվի տեսական ու գործնական մեծ նշանակություն ունեցող առավել հրատապ պրոբլեմների մշակման վրա, մասնավորապես այնպիսի պրոբլեմների, ինչպիսիք են հանրապետության սոցիալական զարգացման, հասուն սոցիալիզմի հասարակարգի և կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման արդի փուլի տեսական հարցերը, սոցիալիստական ազգերի զարգացման պրոբլեմները, սովետական ժողովրդի՝ որպես պատմական նոր ընդհանրության, ձևավորման հարցերը, սովետական սոցիալիստական ապրելակերպի տեսական պրոբլեմները և այլն:

Կուսակցական կազմակերպությունների և հասարակական գիտությունների ասպարեզում աշխատող գիտնականների գործունեության միջև է՛լ ավելի սերտ փոխադարձ կապի նպատակով հարկավոր է նրանց մշտապես ներգրավել կուսակցական կոմիտեների աշխատանքում, կատարելագործել նրանց հետաքրքրող հարցերի վերաբերյալ ինֆորմացիա տալու դրվածքը, ավելի հաճախ կազմակերպել կուսակցական, սովետական, տնտեսական ղեկավար աշխատողների ելույթները գիտահետազոտական կոլեկտիվներում և բուհական կազմակերպություններում:

Մարքս-լենինյան տեսությունը և մեր կուսակցության պրակտիկ գործունեությունը միշտ էլ տոգորված են եղել խոր հոգատարությամբ այն բանի նկատմամբ, որ գրականությունն ու արվեստը ի սպաս դրվեն ժողովրդին, արդյունավետ օգտագործվեն նոր մարդու դաստիարակության գործում: Կուսակցության XXIV համագումարում ձևակերպվեց սովետական մարդու աշխարհայացքի, նրա բարոյական համոզմունքների, հոգևոր կուլտուրայի ձևավորման գործում գրականության և արվեստի հարաճուն դերի մասին թեզը:

Արդի սովետահայ գրականության մեջ, ընդհանուր առմամբ, հաջողությամբ շարունակվում է կյանքի, սոցիալիստական իրականության գեղարվեստական հետազոտման պրոցեսը՝ ընդգրկելով իրականության ամենաբազմազան կապերն ու դրսևորումները, իմաստավորելով հասարակության մեջ տեղի ունեցող կարևորագույն պրոցեսները, արտացոլելով ժողովրդի կեցության արմատական պրոբլեմները: Նկատելիորեն ամրապնդվել են գրողների կապերը արտադրական կոլեկտիվների հետ: Այդ ամենը արտացոլվում է մեր գրողների բանաստեղծների երկերում:

Վերջին տարիներս հանրապետության գրողների միությունը զգալի աշխատանք է կատարել եղբայրական հանրապետությունների հետ գրական կապերն ընդլայնելու ուղղությամբ: Կուսակցության լենինյան ազգային քաղաքականության, բարեկամության ու եղբայրության մեծ տոնի վերածվեցին Ավ. Իսահակյանի ծննդյան 100-ամյակը, հայ գրականության շաբաթները Ուկրաինայում և Տաջիկստանում, տաջիկական գրականության շաբաթը Հայաստանում:



Գրողների միության կուսակցական կազմակերպության խնդիրն է այսուհետև ևս նպաստել այն բանին, որպեսզի կյանքի գեղարվեստական հետազոտման խորությունն ու հիմնավորությունը բխեն արվեստագետի կուսակցական դիրքերից, ժողովրդի նպատակների ու խնդիրների, հասարակական լուրջ պրոբլեմների հստակ ըմբռնումից, գեղարվեստական և էսթետիկական դաստիարակության վիթխարի ուժով օգնեն կուսակցական կազմակերպություններին, աշխատավորներին՝ հաջողությամբ լուծելու այն մեծ ու պատմական խնդիրները, որոնք դնում է կուսակցությունը, աջակցեն վերացնելու ծագող դժվարությունները, թերությունները:

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման համար համաժողովրդական պայքարի ավանգարդում ընթացող բանվոր դասակարգի, աշխատավոր մարդու, աշխատավորական կոլեկտիվների թեման պետք է գրավի առաջատար տեղերից մեկը:

Այսօր, ինչպես միշտ, սուր և հրատապ է դրված գեղարվեստական ստեղծագործության մեջ սոցիալիստական ռեալիզմի արվեստի լենինյան հիմնարար սկզբունքների կուսակցականության, դասակարգայնության, ժողովրդայնության սկզբունքների հետևողական կենսագործման պրոբլեմը:

Գրական պրոցեսի իմաստավորման և նրան ուղղություն տալու մեջ կարևոր դեր է պատկանում գրական քննադատությանն ու գրականագիտությանը: «Գրական-գեղարվեստական քննադատության մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը մեզ կողմնորոշում է ուշադրությունը կենտրոնացնել գրական քննադատության մակարդակի բարձրացման վրա, պայքարել գաղափարական և գեղարվեստական խոտանի նկատմամբ հաշտվողական վերաբերմունքի դեմ, անկախ նրա դրսևորման ձևից:

Տաղանդի, հեղինակի նկատմամբ հոգատար վերաբերմունքը գրական քննադատության մեջ պետք է զուգորդվի սկզբունքայնության և գեղարվեստական խստապահանջության հետ, գրական ստեղծագործության մեջ կուսակցական գծից ամեն մի նահանջի նկատմամբ անհաշտվողականության հետ:

Վերջին տարիներս նկատելի հաջողությունների է հասել հանրապետության կերպարվեստը: Հայ գեղանկարիչների, գծանկարիչների, քանդակագործների լավագույն ստեղծագործություններն աչքի են ընկնում սոցիալիստական ռեալիզմի սկզբունքներին հավատարմությամբ, գեղարվեստական վարպետությամբ, նոր արտահայտչամիջոցների բեղմնավոր որոնումներով: Կերպարվեստի գաղափարա-գեղագիտական բարձր մակարդակ ցուցաբերեցին «Փառք աշխատանքին», «Մեծ հաղթանակի երեսուն տարին», «Հայրենի երկրում» դեկորատիվ-կիրառական արվեստի, թատրոնի, կինոյի ու հեռուստատեսության նկարիչների և այլ ցուցահանդեսներ: Կերպարվեստի բազմաթիվ հայ վարպետների ստեղծագործությունները հաջողությամբ ցուցադրվեցին Մոսկվայում, միութենական հանրապետություններում և արտասահմանում:

Նկարիչների միության ղեկավարությունը և կուսակցական կազմակերպությունը պարտավոր են ամենօրյա նպատակասլաց աշխատանք կատարել նկարիչների ստեղծագործական պրոցեսին ուղղություն տալու ասպարեզում, բավարար խորությամբ բացահայտելու մեր ժամանակակցի կերպարը, զարգացած սոցիալիստական հասարակարգի վիթխարի նվաճումների լույսի տակ:

Հայ կինեմատոգրաֆիայի ասպարեզում հաշվետու ժամանակաշրջանը նշանավորվեց ժամանակակից և պատմա-հեղափոխական թեմատիկային նվիրված մի շարք կինոնկարների ստեղծմամբ, որոնք ամրապնդում են նախորդ տարիների հաջողությունները, առաջ քաշում գաղափարա-գեղագիտական նոր խնդիրներ: Այդ ֆոնի վրա անհանդուրժելի է, երբ մինչև հիմա նկատվում է հաշտվողական վերաբերմունք մեր հանդիսատեսի հոգևոր պահանջներին չհամապատասխանող միջակ աշխատանքների նկատմամբ: «Հայֆիլմ» կինոստուդիան գաղափարա-գեղագիտական ցածր մակարդակով է կատարում կենտրոնական հեռուստատեսության պատվերները: Երևանի փաստավավերագրա-

կան ֆիլմերի ստուդիայի թողարկած մի շարք ֆիլմեր նկատելիորեն ետ են մնում սովետական ժամանակակից գեղարվեստական կինոհրապարակախոսության մակարդակից։ Խնդիրն այն է, որպեսզի հանրապետության կինեմատոգրաֆիան ամենամոտ ժամանակներում դուրս գա սովետական կինոյի առաջավոր շարքերը։

Աշխատավորների գաղափարագեղագիտական դաստիարակության գործում մեծ դեր է պատկանում թատրոնին։ Վերջին տարիների շատ ներկայացումներ նշանակալի երևույթներ դարձան թատերական կյանքում, արժանացան հասարակայնության բարձր գնահատականին, տարբեր մրցանակների։ Աճել է մեր թատրոնի գաղափարագեղագիտական ընդհանուր մակարդակը, ընդլայնվել է նրա թեմատիկ դիապազոնը։ Անհրաժեշտ է ջանքերն ուղղել այն բանին, որպեսզի թատրոնների բեմում չհայտնվեն թույլ, մտքով աղքատ, ռեժիսուրայով և ձևավորմամբ անարտահայտիչ ստեղծագործություններ։

Ժողովրդի հոգևոր մշակույթի մեջ կարևոր տեղ է պատկանում երաժշտությանը։ Սովետահայ երաժշտության լավագույն ստեղծագործությունները քաջ ծանոթ են և լայն մասսայականություն են վայելում հանրապետությունում և նրա սահմաններից դուրս։ Վերջին տարիներս ստեղծվել են քաղաքացիական բարձր հնչեղության ոչ քիչ թվով ստեղծագործություններ։ Մեր կոմպոզիտորների խնդիրն է երաժշտական ստեղծագործություններում խորապես ու համակողմանիորեն բացահայտել սովետական մարդու կերպարը, դրա համար գտնել նոր արտահայտչամիջոցներ։

Այսօր մեր ողջ գաղափարական աշխատանքում նոր մարդու ձևավորման գործում գրականության և արվեստի հարաճուն դերի պայմաններում ստեղծագործական միությունների ղեկավարների, սկզբնական կուսակցական կազմակերպությունների խնդիրն է՝ լավ, մտածված աշխատանքով միություններում ստեղծել համախմբվածության, ստեղծագործական ակտիվության, փոխադարձ ընկերական պահանջկոտության մթնոլորտ։

Կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունը ըստ արժանվույն են գնահատում սովետական ժողովրդի համար հոգևոր արժեքներ ու հարստություն ստեղծող կուլտուրայի և արվեստի գործիչների աշխատանքը։ Մենք այսօր հպարտությամբ կարող ենք նշել, որ հանրապետության կուլտուրայի և արվեստի նշանավոր ներկայացուցիչների ստեղծարար գործունեությունը նույնպես արժանացել է բարձր գնահատականի։ Սունդուկյանի անվան ակադեմիական թատրոնի գլխավոր ռեժիսոր, ՍՍՀՄ ժողովրդական արտիստ Վ. Աճեմյանին շնորհվեց սոցիալիստական աշխատանքի հերոսի բարձր կոչում (ծափահարություններ), անվանի քանդակագործ Ե. Քոչարին՝ ՍՍՀՄ ժողովրդական նկարչի կոչում (ծափահարություններ), Հայկական ՍՍՀ ակադեմիական կապելլայի գեղարվեստական ղեկավար և գլխավոր դիրիժոր Հ. Չեքիջյանը արժանացավ ՍՍՀՄ պետական մրցանակի։ (Ծափահարություններ)։ ՍՍՀՄ շքանշաններով ու մեդալներով պարգևատրվեցին կուլտուրայի և արվեստի շատ աշխատողներ, մի շարք լավագույն գործիչներ արժանացան Հայկական ՍՍՀ պետական մրցանակի, հանրապետության պատվավոր կոչումների։

Գրականության և արվեստի գործիչների պատվավոր ու կենսական պարտքն է անձնվիրաբար ծառայել հարազատ ժողովրդին, կոմունիստական կուսակցության գործին, մասսաներին հասցնել կուսակցության խոսքը, ստեղծել մեր մեծ դարաշրջանին արժանի երկեր, իրենց ստեղծագործություններով հարազատ ժողովրդի հետ միասին ակտիվորեն մասնակցել կոմունիզմի կառուցմանը։ Մենք վստահ ենք, որ մեր գրականության և արվեստի գործիչները, որոնք կանգնած են գաղափարական աշխատանքի առաջավոր գծի վրա, այսուհետև ևս պատվով կկատարեն այդ խնդիրը։ (Ծափահարություններ)։

Հանրապետությունում գործում է ակումբների, կուլտուրայի տների և պալատների, թանգարանների և գրադարանների լայն ցանց։ Անցած հնգամյակում կառուցվել է 140 ակումբ և շինարարության փուլում է գտնվում 61-ը։

Հանրապետության կուլտուրայի մինիստրությունը, կուսակցական, սովետական, կոմերիտական կազմակերպությունները պետք է այնպես անեն, որ յուրաքանչյուր ակումբ և կուլտուրայի պալատ, յուրաքանչյուր գրադարան և թանգարան, կուլտուրայի և հանգստի զբոսայգի աշխատեն ստեղծագործաբար ու նախաձեռնությամբ, ձևով ու բովանդակությամբ դառնան դաստիարակության իսկական մասսայական կենտրոններ, կուլտուրայի օջախներ, անշեղորեն կենսագործեն իրենց առջև դրված կուլտուր-լուսավորական լուրջ և պատասխանատու խնդիրները։

Ընկերնե՛ր։ Հանրահայտ է մասսայական ինֆորմացիայի միջոցների՝ մամուլի, հեռուստատեսության ու ռադիոհաղորդումների կարևորագույն դերը մեր գաղափարական աշխատանքում։ Հասարակական-քաղաքական կյանքում ձեռք բերած հաջողությունների մեջ մեծ է այդ օրգանների, նրանց ստեղծագործական կոլեկտիվների ներդրած ավանդը։ Նրանք քիչ աշխատանք չեն տարել և այժմ էլ տանում են Կենտկոմի ցուցումների ոգով։ Բայց ում շատ է տրված, նրանից շատ էլ պահանջվում է։ Պետք է ասել, որ ամենևին էլ լրիվ ակտիվորեն ու արդյունավետ չեն օգտագործվում մասսայական ինֆորմացիայի լայն հնարավորությունները։

Աշխատանքների կազմակերպման լավ մտածված նպատակասլացությունը, հանրապետության նվաճումների որակյալ ցուցադրումը, աշխատանքի այս կամ այն տեղամասում գործերի վիճակի բանիմաց վերլուծությունը, հաջողությունների ցուցադրման և թերությունների գործարար քննադատության ճիշտ զուգակցումը, տնտեսական, արտադրական, գաղափարական և դաստիարակչական աշխատանքի արմատական պրոբլեմների, ժողովրդական տնտեսության կառավարման կենսական խնդիրների, ինչպես նաև բացասական երևույթների դեմ մղվող պայքարի հետ կապված նյութերի լուսաբանման աշխատանքի կոմպլեքսային ծրագիրը՝ այս ամենը դեռ պատշաճ ու լրիվ արտացոլում չի գտնում ինֆորմացիայի միջոցների աշխատանքում։

Պետք է նշել նաև այն, որ քիչ չեն փաստերը, երբ մինիստրությունների, գերատեսչությունների և այլ կազմակերպությունների ղեկավարները հիվանդագին կերպով են արձագանքում մամուլի քննադատական ելույթներին, փորձում են լռությամբ մատնել քննադատությունը կամ գլուխներն ազատել ձևական խոստովանություններով։ Անհրաժեշտ է, որպեսզի մամուլի նման ոչ մի ելույթ անարձագանք չմնա։ Դրա համար անհրաժեշտ է խիստ պատասխան պահանջել։

Չնայած որոշակի հաջողություններին, դեռևս լուրջ թերություններ կան մեր գրահրատարակչական գործում։ Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի պետական կոմիտեն պետք է գործուն միջոցներ ձեռնարկի կատարելագործելու հրատարակությունների պլանավորումը, բարձրացնելու հրատարակվող գրականության գաղափարական բովանդակությունը և պոլիգրաֆիական մակարդակը, ապահովելու հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի ձեռնարկությունների աշխատանքի արմատական բարելավումը։

Ի մի բերելով, պետք է ասել, որ մեր խնդիրն է ամեն կերպ ամրապնդել այն դրականը, ինչ ձեռք է բերվել գաղափարական-քաղաքական աշխատանքում և ամենաարագ կերպով ու վճռականորեն վերացնել այն թերությունները, որոնք եղել են և շարունակում են մնալ հանրապետության կուսակցական կազմակերպության գաղափարական գործունեության ղեկավարման ոլորտում։

Ընկերնե՛ր։ Ինչպես հայտնի է, Հայաստանի կոմկուսի Կենտկոմը ամենայն սրությամբ դրեց աշխատավորների մեջ կոմունիստական բարոյական սկզբունքների ու բարոյական կողմնորոշիչների հետագա ձևավորման աշխատանքը արմատապես բարելավելու, կոմունիստական բարոյականության ամեն տեսակ հակոտնյաների դեմ հետևողական ու անզիջում պայքար մղելու անհրաժեշտության հարցը։

Անցած տարվա ընթացքում այդ ասպարեզում որոշակի աշխատանք է կատարվել։ Բացասական երևույթների դեմ պայքարն ուժեղացնելու ուղղությամբ հանրապետության կուսակցական կազմակերպությունների կողմից ձեռնարկ-

վող միջոցառումները առաջ բերեցին հանրապետության աշխատավորների ջերմ հավանությունը, բարձրացրին նրանց քաղաքացիական ակտիվությունը, պատրաստակամությունը՝ ըստ ամենայնի աջակցելու հասարակության կյանքում տեղի ունեցող դրական պրոցեսների հետագա զարգացմանը։

Կարելի է մեզ ուրախացնող շատ փաստեր բերել, երբ բազմաթիվ սկզբնական կուսակցական կազմակերպություններ, արտադրական կոլեկտիվներ, ինչպես նաև բնակչության որոշ շրջաններ, ոգեորված կուսակցության Կենտկոմի ցուցումներով, իրոք, կոնկրետ և գործնական պայքար են մղում սովետական ապրելակերպին խորթ բարքերի, չարաշահումների, սպառողական հոգեբանության, հանրային ունեցվածքի նկատմամբ անփույթ վերաբերմունքի, կաշառակերության և ամեն տեսակ այլ խախտումների դեմ։

Բազմաթիվ բացասական փաստեր են հայտնաբերվել կոմունիստներից, կոմերիտականներից, բանվորներից, կոլտնտեսականներից ու ծառայողներից Կենտկոմում և այլ համապատասխան մարմիններում ստացվող ճիշտ ահազանգումներով։ Այս ամենը պերճախոս վկայությունն է այն բանի, որ կուսակցական կազմակերպությունների այդ ուղղությամբ կատարվող աշխատանքը պարարտ հող է գտնում աշխատավորական մասսաների լայն շրջաններում։

Դրա հետ մեկտեղ պետք է ասել, որ բացասական երևույթների դեմ պայքարի ուղղությամբ ոչ բոլոր կուսակցական կազմակերպությունների աշխատանքն է եղել այնպես պլանաչափ, նպատակասլաց և համակողմանի, որ կարողանային ավելի լրիվ, ավելի գործուն կերպով գլխավորել Կենտկոմի հունվարյան պլենումի կողմից կյանքի կոչված՝ աշխատավորների հասարակական-քաղաքական ակտիվությունը։

Անցյալ տարվա փորձը ցույց տվեց, որ բացասական տարրերը հեշտությամբ չեն զիջում իրենց դիրքերը, այդ մարդկանցից առանձնապես անուղղելիները սկսել են իրենց չարագործությունների ավելի հնարամիտ մեթոդներ կիրառել, մանավանդ այնտեղ, ուր թույլ է եղել նրանց դեմ մղվող պայքարը, ուր վատ են կատարվել Կենտկոմի ցուցումները՝ անտնտեսվարությունը, հաշվառման, հաշվետվության բարձիթողի վիճակը, ֆինանսատնտեսական կարգապահության խախտումները վերացնելու մասին, նյութերի ծախսման նորմաների ճիշտ կիրառման նկատմամբ վերահսկողությունն ուժեղացնելու մասին, այնտեղ, ուր գոյություն ունեն բյուրոկրատիզմ ու քաշքշուկ, ուր խախտվում են օրենքները և այլն։

Կուսակցական, սովետական և մյուս մարմինների ղեկավարներից շատերը չեն կազմակերպել աշխատանքի լայն ճակատ՝ վերացնելու զանազան չարաշահումների կատարմանը նպաստող պայմանները և սնուցող հողը։ Առանձին կազմակերպություններում հարձակողական դաստիարակչական աշխատանք չի տարվում սոցիալիստական ապրելակերպի հետ անհամատեղելի մանրբուրժուական սպառողական հոգեբանության դեմ, տնտեսապես ուռճանալու, իրերի պաշտամունքի, անբարոյական վարվելակերպի դեմ, ի վնաս հասարակության շահերի այլանդակության հասնող անձնական բարօրության դեմ և այլն։

Վ. Ի. Լենինը նշել է, որ սովետական ապրելակերպի հակոտնյաների դեմ պայքարը «կարելի է ավարտել այն դեպքում միայն, երբ բուն ժողովրդական մասսան օգնում է»։

Մեզ մոտ, ինչպես այդ մեկ անգամ էլ ցույց տվեց անցած տարվա փորձը, աշխատավորների հասարակական-քաղաքական ակտիվության պակաս չի զգացվում։ Բոլոր կուսակցական կազմակերպություններին անհրաժեշտ է ավելի վճռականորեն և ամենուրեք գլխավորել այդ ակտիվությունը։ Շարունակել ավելի հարձակողական պայքարը՝ կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի վսեմ գաղափարները մեր կյանքում, մարդկանց գիտակցության մեջ, արարքներում, գործերում ու կենցաղում հաստատելու համար, աշխատավորների գաղափարական-բարոյական դաստիարակության կոմպլեքսային ծրագիրն իրականացնելու համար, բարձր պետականության զգացումի լայն ներդրման, սովետական օրենսդրության ու իրավական կարգի անշեղ կատարման համար։



Այսպիսին է կուսակցական կազմակերպությունների գործունեության կարևորագույն ու գլխավոր ուղղություններից մեկը։

Ընկերնե՛ր։ Կենտկոմի ցուցումներին համապատասխան, հանրապետության վարչական մարմինները որոշ աշխատանք են կատարել օրինականության և իրավակարգի ամրապնդման, հանցագործությունների դեմ պայքարն ուժեղացնելու ուղղությամբ, ամեն տեսակի բացասական երևույթների կանխման, բացահայտման և վերացման համար մղվող պայքարի ուղղությամբ։ Այդ բանը չի կարելի ժխտել և չպետք է ժխտել։ Կուսակցական կազմակերպությունները, սովետական և մյուս բոլոր մարմինները, լայն հասարակայնությունը պետք է ամենուրեք և ակտիվորեն օգնեն վարչական մարմիններին՝ նրանց այդ մեծ, դժվարին ու բարդ աշխատանքում, ամեն կերպ արժանիորեն բարձրացնեն նրանց հեղինակությունը, նկատի ունենալով, որ օրինախախտողների ու ոճրագործների համախոհների մեջ դեռևս քիչ չէ այդ մարմիններին վատաբանելու, զրպարտելու ձգտող չարախոսների թիվը։ Այստեղ պետք է հանդես բերվի պատշաճ քաղաքական զգաստություն։

Սակայն, ելնելով հենց այդ նպատակներից և գործի շահերից, պետք է ասել, որ վարչական մարմինների առանձին օղակներ դեռևս լրիվ ու վճռականորեն չեն վերակառուցել իրենց գործունեությունը կուսակցության պահանջներին համապատասխան։ Այդ մարմինների ստորաբաժանումներից շատերը դեռևս աշխատում են հին ձևով, կարևորագույն մի շարք տեղամասեր դեռ չեն մաքրվել նրանցում աշխատելու համար վստահություն չներշնչող մարդկանցից։

Վարչական օրգանների հատուկ հոգածության առարկա պետք է դառնա պայքարը առանձնապես վտանգավոր հանցագործությունների և սոցիալիստական սեփականության հափշտակումների դեմ։ Պետք է նկատի ունենալ, որ վարչական մարմինների աշխատանքում յուրաքանչյուր վրիպում, թերություն և սխալ բացասաբար է անդրադառնում և անցանկալի արձագանք է գտնում հասարակայնության շրջանում։

Վարչական մարմինների ղեկավարների և կուսակցական կազմակերպությունների խնդիրն է՝ բազմապատկել իրենց ջանքերը, վճռականորեն վերակառուցել աշխատանքը իրադրության համար պատշաճ ու անհրաժեշտ հարձակողական ոգով, նրա բոլոր տեղամասերն ամրապնդել ստուգված, որակյալ աշխատողներով, որոնք ի վիճակի լինեն օրինախախտողների դեմ պայքար մղելու մեր պահանջներին համապատասխան։

Հանրագումարի բերելով, մենք տեսնում ենք դրական մեծ աշխատանքի սկիզբը, ինչպես նաև լուրջ թերություններ ու վրիպումներ՝ բացասական երևույթների վերացման համար մղվող պայքարում։ Դրա հետ մեկտեղ մենք այսօր պետք է վճռականորեն ասենք. թող ոչ ոք, տեսնելով այդ վրիպումները, մի րոպե անգամ չտարակուսի, թե մենք կթուլացնենք մեր ջանքերը կամ ինչ-որ չափով կնահանջենք։ Ընդհակառակն, թույլ տված թերությունները, դրանց պատճառները պարզելը մեզ բոլորիս, բոլոր կուսակցական կազմակերպություններին է՛լ ավելի կմոբիլիզացնեն առավել ակտիվ, անզիջում ու անողոք պայքարի՝ բացասական, պախարակելի այն ողջ չարիքի դեմ, որ գոյություն ունի մեր կենսագործունեության մի շարք ասպարեզներում՝ կուսակցական ու պետական կարգապահությունը, սովետական օրենսդրությունն ու իրավական կարգը խախտվելու հետևանքով։

Համագումարը պետք է կուսակցական, սովետական, տնտեսական, արհմիութենական, կոմերիտական բոլոր մարմիններից ու նրանց ղեկավարներից պահանջի վերջ տալ անհետևողականությանը մեր հասարակայնությանը խորթ երևույթների դեմ մղվող պայքարում, այդ գործում հասնել առավելագույն արդյունքների։ (Ծափահարություններ)։

## IV. ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՂԵԿԱՎԱՐՄԱՆ ՄԱԿԱՐԴԱԿԸ, ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՈՃՆ ՈՒ ՄԵԹՈԴՆԵՐԸ

Ընկերնե՛ր։

Էկոնոմիկայի, գիտության, կուլտուրայի և մեր կենսագործունեության մյուս բնագավառներում հանրապետության ձեռք բերած հաջողությունների մեջ

կարևոր տեղ է գրավում կուսակցական-կազմակերպական այն աշխատանքը, որ կատարել են հանրապետության կուսակցական կազմակերպությունը, քաղկոմները, շրջկոմները և սկզբնական կուսակցական կազմակերպությունները։ Նրանց գործունեությունը նպատակամղված է եղել կուսակցության քաղաքականության, նրա սոցիալ-տնտեսական ծրագրի կենսագործման համար կոմունիստների, աշխատավոր մասսաների, մտավորականության ջանքերը մոբիլիզացնելուն։

Սակայն համագումարում մենք պետք է հատկապես կանգ առնենք հաշվետու ժամանակաշրջանում, ինչպես նաև դրանից առաջ կուսակցական աշխատանքում տեղ գտած լուրջ թերությունների ու սխալների վրա, որոնք ժամանակին նշվեցին Հայաստանի կոմկուսի 1974 թվականի նոյեմբերյան պլենումում, քիչ ավելի ուշ համակողմանիորեն քննարկվեցին ու վերլուծվեցին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1975 թվականի հունվարյան պլենումում։

Պլենումում խոսվեց ոչ միայն կուսակցական աշխատանքում թույլ տրված մասնակի սխալների ու վրիպումների մասին, այլև առանձին դեպքերում կուսակցական ղեկավարման սկզբունքների և կուսակցական կյանքի լենինյան նորմաների խախտումների մասին, ժամանակակից պահանջներին այդ ղեկավարման մակարդակի ոչ լրիվ համապատասխանության մասին, որ լրջորեն արգելակեց, որպեսզի տնտեսական-կուլտուրական շինարարության ասպարեզում հանրապետության հաջողությունները շատ ավելի մեծ լինեին, քան կան։ Լուրջ վնաս է հասցվել կադրային աշխատանքին, կադրերի գաղափարա-քաղաքական դաստիարակության, քննադատության և ինքնաքննադատության զարգացման գործին։

Որոշակի օղակներում և աշխատողների մի մասի, այդ թվում պաշտոնատար անձանց գործունեության մեջ, խախտվել էր կուսակցական-պետական կարգապահությունը։ Ստեղծվել էր ամեն ինչ ներելու և անպահանջկոտության իրադրություն։ Տեղ էին գտել օրինազրության և իրավակարգի խախտումներ և սովետական ապրելակերպին ու բարոյականությանը խորթ այլ բացասական երևույթներ։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հունվարյան պլենումի քաղաքական պատասխանատվությունը շատ բարձր էր, իսկ գործնական նշանակությունը՝ խիստ կարևոր։ Պլենումը, պետք է ի պատիվ նրա ասել, գտնվեց այդ պատասխանատվության բարձրության վրա, իր կոչման բարձրության վրա։

Պլենումի նշանակությունն այն է, որ նա տվեց տեղ գտած սխալների և կուսակցական կյանքի նորմաներից շեղումների քաղաքական օբյեկտիվ գնահատականը, խստիվ դատապարտեց դրանք ու առանց թաքցնելու, համարձակորեն և ի լուր ամենքի, այդ մասին ասաց ամբողջ կուսակցական կազմակերպությանը, հանրապետության բոլոր աշխատավորներին, լիովին վստահ լինելով Հայաստանի կոմկուսի մարտականության ու քաղաքական ուժին, այն բանին, որ հանրապետության կուսակցական կազմակերպությունը, ՍՄԿԿ Կենտկոմի ղեկավարությամբ, կկարողանա մինչև վերջ հաղթահարել թույլ տրված սխալները։ Պլենումը սահմանեց կուսակցական կոմիտեների, սովետական, տնտեսական և վարչական մարմինների, հասարակական կազմակերպությունների պրակտիկ գործողությունների ծրագիրը այդ ուղղությամբ։

Պլենումի առաջադրած խնդիրները միանգամայն նպատակասլաց են կողմնորոշման համար, միանգամայն պարզ են ըմբռնելու համար և միանգամայն հստակ՝ գործնական կատարման համար։

Կուսակցական կազմակերպությունները, հանրապետության բոլոր կոմունիստներն ու աշխատավորները ջերմ հավանությամբ և լիակատար պաշտպանությամբ ընդունեցին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հունվարյան պլենումի դրույթները։ Դրանում մենք պետք է ամենից առաջ տեսնենք Հայաստանի ամբողջ կուսակցական կազմակերպության քաղաքական հասունությունն ու մարտական պատրաստակամությունը՝ կատարելու Սովետական Միության կոմունիստական կուսակցության և նրա Կենտրոնական կոմիտեի բոլոր առաջադրանքներն ու ցուցումները։ (Ծափահարություններ)։

Անցած տարին, մի կողմից, կարելի է բավարար ժամկետ համարել՝ տես-



նելու, թե արդյոք երևան եկե՞լ են անհրաժեշտ հաստատուն միտումներ, արդյոք տեղի՞ են ունենում դրական անհրաժեշտ պրոցեսներ, որոնք ի վերջո կհանգեցնեն մեզանում տարիների ընթացքում կուտակված բոլոր բացասական երևույթների վերացմանը։ Իսկ մյուս կողմից, այդ մեկ տարվա ժամանակամիջոցը պետք է չափազանց փոքր համարել՝ առավել կամ պակաս վերջնական հետևություններ և ընդհանրացումներ անելու համար այն մեծ ծավալի աշխատանքների կենսագործման մասին, որոնք նախատեսվեցին հասարակական-քաղաքական կյանքի առանձին բնագավառներում և հանրապետության ղեկավար մարմինների գործունեության մեջ իրերի վիճակը բարելավելու համար։

Պատասխանելով հարցի առաջին մասին, կարելի է ասել, որ կուսակցության Կենտկոմի ձեռնարկած որոշակի միջոցառումների շնորհիվ ամեն ինչ ներելու իրադրության, կարգապահության բարձիթողի վիճակի և մեր ապրելակերպին անհարիր երևույթների դեմ պայքարի բացակայության ընդհանուր բացասական ֆոնը հանրապետության հասարակական-քաղաքական կյանքից վերացնելու՝ պլենումի կուրսի իրականացման գործում երևան են եկել հաստատուն և միանգամայն դրական միտումներ, անհրաժեշտ պրոցեսներ են սկսվել աշխատանքի բոլոր օղակներում։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները միջոցներ ձեռնարկեցին՝ ամրապնդելու կարգապահությունը աշխատանքի կարևոր ու վճռական տեղամասերում, մանրակրկիտ կերպով և օբյեկտիվորեն քննարկեցին մի ամբողջ շարք ղեկավար աշխատողների կողմից թույլ տրված խախտումների և ոչ ճիշտ վարքագծի փաստերը։ Նրանց նկատմամբ ձեռնարկվեցին կուսակցական խիստ պատիժներ։ Մի շարք ընկերներ հանվեցին գրաված պոստերից, իսկ մի քանիսի նկատմամբ կիրառվեցին այնպիսի ծայրահեղ միջոցներ, ինչպիսիք են վտարումը կուսակցության շարքերից, Կենտկոմի կազմից հանելը, հանրապետության Գերագույն սովետի դեպուտատությունից ետ կանչելը։

Այդ միջոցառումները օբյեկտիվորեն անհրաժեշտ էին, դրանք արժանի և ուսանելի դաս եղան բոլոր նրանց համար, ովքեր չունեն կայուն դիմադրողականություն կարգապահության և օրենքի խախտումների հանդեպ։ Ոչ թե հանգստացման, այլ կողմնորոշման համար պետք է ասել, որ զգացվում է մեր աշխատողների զգաստությունն ու մոբիլիզացվածությունը, և դրանում մենք կարող ենք տեսնել Կենտկոմի հունվարյան պլենումի որոշումների ներգործության դրական սկիզբը, ամենուրեք կարգապահությունն ամրապնդելու՝ նրա հստակորեն արտահայտված գծի ներգործության սկիզբը։ Այդ գծին մենք հավատարիմ կմնանք նաև այսուհետև։

Ներկա պայմաններում Հայաստանի կոմկուսի Կենտկոմը կադրերի ընտրության ժամանակ անհրաժեշտ հատկությունների թվում հատուկ ուշադրություն է դարձնում այն բանի վրա, թե կկարողանա՞, արդյոք, տվյալ աշխատողը, ինքը լինելով կարգապահ, լինել կարգապահության խախտումների և դրանց կրողների դեմ պայքարի կազմակերպիչ։ Այդ հատկանիշներով անցած տարում կուսակցական, սովետական և հասարակական աշխատանքի մի ամբողջ շարք տեղամասերում առաջ քաշվեցին աշխատողներ, որոնց մի մասն ունի ղեկավար աշխատանքի բավարար փորձ, իսկ մյուս մասը երիտասարդներ են, որոնք պարտավոր են և կարող են պրակտիկ փորձ ձեռք բերել իրենց ղեկավար գործունեության պրոցեսում։

Հայաստանի կոմկուսի ներկա XXVI համագումարին նախորդող սկզբնական կուսակցական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովները, քաղաքային ու շրջանային կուսակցական կոնֆերանսներն անցան ՍՄԿԿ Կենտկոմի շուրջը Հայաստանի կոմկուսի միաձույլ համախմբվածության նշանաբանով։ Նրանք պաշտպանեցին ՍՄԿԿ Կենտկոմի որոշումների և դրանց համապատասխան Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հունվարյան պլենումի ընդունած որոշումների կատարման ուղղությամբ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի գործունեությունը։ Կոմունիստների աճած ակտիվության, սխալների ու թերությունների հաղթահարման նկատմամբ նրանց շահագրգռվածության մա-

սին ակնառու կերպով վկայում է այն, որ հաշվետու-ընտրական ժողովներին մասնակցել է բոլոր կոմունիստների մոտ 95 տոկոսը, մտքերի փոխանակությանը ելույթ է ունեցել 33.731 կոմունիստ կամ հանրապետության կուսակցական կազմակերպության յուրաքանչյուր 4-րդ անդամը։

Ընկերնե՛ր։ Նշելով դրական այն ամենը, ինչ ձեռք է բերել հանրապետության կուսակցական կազմակերպությունը, գործի համար օգտակար կլինի, եթե մենք մեր կուսակցական համագումարի ուշադրությունը սևեռենք մեր աշխատանքում տեղ գտած թերությունների և բացերի վրա, մանավանդ որ Կենտկոմի հունվարյան պլենումը նշեց, որ թույլ տրված սխալների քննադատությունը ոչ միայն պատասխանատվություն է ենթադրում նրա ճշտության համար, այլ նախ և առաջ ենթադրում և պարտադրում է պատասխանատվություն այդ ամենի շտկման համար, ինչը քննադատվում է։ Պլենումը նշեց, որ բոլոր համապատասխան մարմիններն ու նրանց ղեկավարները, սկսած Կենտկոմի բյուրոյից, պետք է պարբերաբար և սիստեմատիկորեն հաշվետու լինեն աշխատանքի հանձնարարված բնագավառում թույլ տրված և քննադատությամբ բացահայտված սխալների ու թերությունների շտկման ընթացքի մասին, կուսակցության և կառավարության պահանջներին համապատասխան գործերի վիճակը բարելավելու մասին։ Ներկա համագումարը պետք է ընթանա մեր աշխատանքի քննադատական վերլուծության նշանաբանով, և դրանով պետք է տոգորված լինի մեզանից յուրաքանչյուրի ելույթը համագումարի ամբիոնից։

Քննադատորեն դիտելով անցած տարվա մեր աշխատանքը, կարելի է նշել մի ընդհանուր թերություն։ Դա այն է, որ հանրապետության կուսակցական կազմակերպության կյանքում սկզբունքային և կարևոր նշանակություն ունեցող քաղաքական փոփոխությունների ամբողջ խոր իմաստը, կուսակցական, սովետական և մյուս ղեկավար մարմինների, նրանց ղեկավարների ամբողջ հսկայական քաղաքական պատասխանատվությունը ժողովրդի հանդեպ, ՍՄԿԿ Կենտկոմի հանդեպ, մեր աշխատանքի շատ օղակներում հիմնավոր և ամբողջական վերակառուցման ու բարելավման հրամայական անհրաժեշտությունը՝ այս ամենը շատերը մինչև վերջ, ինչպես հարկն է, չեն ըմբռնել ու չեն զգացել։ Այստեղից էլ հիմնականում բխում են բոլոր թերությունները պրակտիկ գործողությունների մեջ։

Եթե մեր վերցրած կուրսը և աշխատանքի ընդհանուր ուղղությունը որոշակի դրական ազդեցություն է ունեցել պատասխանատվության իրադրություն ստեղծելու պրոցեսի վրա, աշխատողների վարքագծի վրա, ապա գործը շատ ավելի բարդ է մեր բոլոր կադրերի, կուսակցական և պետական, սովետական, տնտեսական, գաղափարական և այլ աշխատանքի բոլոր օղակներում, նրանց ղեկավարների, նրանց ապարատների աշխատանքի ընդհանուր ոճի շտկման և շեշտակի բարելավման ասպարեզում։

Մենք մինչև վերջ և լրիվ հաշվի չենք առել, որ տնտեսական բնագավառում տևաբար գոյություն ունեցած ամեն ինչ ներելու և կադրերի նկատմամբ ոչ պահանջկոտության իրադրությունը բացասաբար է անդրադարձել ոչ միայն աշխատողների վարքագծի վրա, կարգապահությունն ու կարգուկանոնն անձամբ պահպանելու իմաստով, այլև անտեսանելիորեն, արտաքուստ ոչ ցցուն և ընդհանուր մասսայի համար ոչ ակնբախորեն, բայց բացասաբար է անդրադարձել այն բանի վրա, որ մեծ թվով աշխատողների մեջ չի մշակվել, չի ստեղծվել աշխատանքի այնպիսի անհրաժեշտ ոճ, որը համապատասխաներ կուսակցության արդի պահանջներին։ Այլ ավելի ճիշտ ասած՝ այդ իրադրությունն իր գոյության տևական ժամանակամիջոցում, օբյեկտիվորեն, տարեցտարի, հետզհետե մշակել և, դժբախտաբար, արմատավորել է աշխատանքի իր յուրահատուկ «ոճը», որը հակասում է ժամանակակից կուսակցական դրույթներին ու պահանջներին։ Այդ «ոճը», ներթափանցելով մի շարք կուսակցական կոմիտեների, մինիստրությունների, գերատեսչությունների, տնտեսական և այլ կազմակերպությունների, դրանց ղեկավարների և ապարատների աշխատողների աշխատանքի բովանդակության մեջ, իջեցրել է նրանց գործունեության արդյունավետությունը։



Դրան պետք է ավելացնել նաև հետևյալը։ Քանի որ որոշակի ժամանակի ընթացքում ոչ քիչ թվով պատասխանատու աշխատողներ ու պաշտոնատար այլ անձինք խախտել էին կարգապահությունը անձնական շահադիտական նպատակներով, ապա շատ-շատերի մեջ խիստ նսեմացված և նեղ պատկերացում էր ստեղծվել կուսակցական-պետական կարգապահության մասին։

Այսօր խոսքը կարգապահության հասկացության շատ ավելի խոր տարողության մասին է, այն մասին, որ կուսակցական և պետական կարգապահություն հասկացության մեջ մտնում է ոչ միայն աշխատողի անձնական վարքագիծը, որ ինքնըստինքյան պետք է հասկանալի լինի, այլև նրա վրա դրված պաշտոնական պարտականությունների ամբողջ կոմպլեքսի ու շրջանակի կիրառումը։ Խոսքը, ընկերներ, աշխատանքի այնպիսի ընդհանուր ոճի մասին է, որն ապահովի նախկինում մեր ունեցածից անհամեմատ ավելի բարձր արդյունավետություն և ավելի մեծ հաջողություն։ Խոսքը ղեկավարման այնպիսի ոճի մասին է, որի պայմաններում մեր ղեկավար մարմինները և նրանց ապարատը լինեն ոչ թե պասսիվ հայեցողների և աշխատանքում եղած ձախողումներն ու թերությունները ետին թվով արձանագրողների դերում, քայլեն ոչ թե իրադարձությունների պոչից, այլ նրանց առջևից և ակտիվորեն կառավարեն աշխատանքի բոլոր պրոցեսները։ (Ծափահարություններ)։

Աշխատանքի այդպիսի ընդհանուր ոճ, որին տիրապետեին մեր բոլոր կադրերը, մեզ առայժմ չի հաջողվել ստեղծել ամենուրեք։ Դրանում ենք մենք տեսնում մեր ղեկավար մարմինների աշխատանքի ընդհանուր լուրջ թերությունը։

Աշխատանքի կուսակցական ոճի հիմնական կողմերից մեկը, լենինյան ըմբռնմամբ, ընդունված որոշումների կենսագործման ուղղությամբ տարվող հետևողական ակտիվ աշխատանքն է և կատարման վերահսկողությունը։ Ահա հենց այստեղ էլ կաղում ենք։

Շատ օրինակներից բերենք մեկը։ 1973 թվականին Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և հանրապետության Մինիստրների սովետը համատեղ որոշում ընդունեցին հանրապետության կոլտնտեսություններում և սովխոզներում կերի պատրաստման արտադրամասեր կառուցելու մասին։ Այդ որոշման կատարումը ստուգվեց միայն երկու տարի անց՝ 1975 թվականի ամռանը։ Եվ ի՞նչ պարզվեց։ Պարզվեց, որ այդ կարևոր որոշման կատարումը, որի երևան գալը ողջունեցին բոլորը, գրեթե ձախողվել է։

Մի՞թե պարզ չէ, որ այդ որոշման կատարման ընթացքի ստուգման արդյունքների ամենասուր քննարկումը, իսկ Կենտկոմի բյուրոյում այդ հարցի քննարկումը իրոք չափազանց սուր էր, չէր կարող վերադարձնել այդ շատ անհրաժեշտ գործի համար ապարդյուն կորած երկու տարիները։

Իհարկե, այս ամենի հիմնական պատճառը ընդունված որոշումների կատարումն ու գործնական, նախազգուշական վերահսկողությունը ապահովելու գործում եղած կազմակերպական անհստակության և անկատարելության, ձևամոլության մեջ է։

Հենց ընդունված որոշումների կենսագործման հստակ և պլանաչափ աշխատանքի կազմակերպման բացակայությամբ պետք է բացատրել նաև այն, որ Կենտկոմի հունվարյան պլենումի մի շարք կարևորագույն ղեկավար ցուցումներ դանդաղ, միանգամայն անբավարար և ոչ լրիվ չափով են իրագործվում։

Մենք պարտավոր ենք խորապես հասկանալ, և դա հանրահայտ է, որ թերությունների և ղեկավարման արատավոր ոճի ճիշտ քաղաքական գնահատականով, միայն դրական դիրքորոշումների շարադրմամբ ու հավանությամբ այդ ոճը նորով չի փոխարինվի։ Մենք ամենևին հաշվի չենք առել այն, որ ապրում և դեռ էլի գոյություն կունենա հին սովորությունների և ընտելությունների ուժը, կադրերի որոշակի մասի, հատկապես տարիներ շարունակ հին ձևերով ու մեթոդներով աշխատած միջին և ցածր օղակի կադրերի նախկին հոգեբանական տրամադրվածությունը։ Մենք ամենևին հաշվի չենք առել աշխատանքի մեր կուրսին դիմադրող բոլոր արգելակիչ և կասեցնող հանգամանքները։

Հունվարյան պլենումի որոշումների դեռևս անբավարար արդյունքները և դանդաղ իրականացումը հետևանք են այն բանի, որ ոչ բոլոր կուսակցական

կոմիտեները, սովետական մարմինները, մինիստրություններն ու գերատեսչությունները, սկզբնական կուսակցական կազմակերպություններն են մշակել և կենսագործել նրա յուրաքանչյուր դրույթի իրականացման կոնկրետ միջոցառումները։

Կենտկոմի պահանջների իրականացման պայքարի կազմակերպման համար մեր ընդհանուր աշխատանքը վերակառուցելու և ոճը բարելավելու տեմպերը, ցավոք, առայժմ դեռ ետ են մնում պլենումի առաջ բերած՝ աշխատավոր մասսաների քաղաքական բարձր ակտիվությունից։

Ընկերնե՛ր։ Մեր պրակտիկան ապացուցել է լենինյան հետևյալ խոսքերի խոր ճշմարտությունը, երբ մշակվել է քաղաքական ճիշտ գիծ և որոշվել է հասունացած խնդիրների լուծման նյութական հնարավորությունը, գլխավորը կուսակցական ու պետական ղեկավարության մեջ դառնում է մարդկանց ընտրությունը, կատարման ստուգումը։

Պլենումը բոլոր ղեկավար մարմինների առջև դրեց մոտակա հեռանկարի համար նախատեսված կարևորագույն խնդիրը՝ բարելավել կադրերի դաստիարակության գործը, կադրային աշխատանքը կազմակերպել իր անընդհատ պրոցեսի մեջ և ստեղծել կադրերի ակտիվ ռեզերվ։

Եթե մեզ մոտ այս կամ այն աշխատանքի համար կադրերի ընտրությունը այժմ կատարվում է՝ հիմնականում հաշվի առնելով կուսակցության պահանջները, ապա գործող կադրերի հետ մշտական աշխատանքի, նրանց մեր այսօրվա պահանջների ոգով դաստիարակելու հարցում, այսինքն՝ կադրային աշխատանքի անընդմեջ պրոցեսի կազմակերպման գործում, մենք քիչ թե շատ նկատելի փոփոխություններ չենք տեսնում։

Չէ՞ որ մեր կադրերը, ինչպես այդ նշվեց վերը, հարկադրված էին աշխատել ցածր պահանջկոտության պայմաններում։ Չէ՞ որ նրանցից բոլորը չէ, որ կարգապահության և վարքագծի նորմաների չարամիտ խախտողներ էին։ Նրանցից շատերին պետք էր վերադաստիարակել, իսկ դա, ինչպես հայտնի է, երբեմն ավելի դժվար է լինում, քան նոր կադր դաստիարակելը։ Շատերին հարկավոր է պատվաստել ավելի մեծ կուսակցականություն աշխատանքում, քաղաքական կոփվածք ու հասունություն, բարձր կարգապահության զգացում։ Այնուհետև, քաղաքական բանականությունը պահանջում էր և թելադրում, որ գործող կադրերի մի մասը փորձարկում անցներ, եթե կարելի է այսպես արտահայտվել, աշխատանքային ավելի մեծ խստապահանջության պայմաններում, նկատի ունենալով օգտագործել նրանց աշխատանքի զգալի փորձը։

Մի խոսքով, պլենումը կուսակցական կոմիտեներին տվեց կադրերի դաստիարակության ու վերադաստիարակության ուղղությամբ գործունեության միանգամայն լայն ու մեծ ասպարեզ, և, ինչպես ասվում է, ծավալվելու շատ տեղ կար։ Բայց լրիվ չծավալվեցին։ Նրանցից շատերը առաջվա պես գերի մնացին կադրային աշխատանքի բովանդակության վերաբերյալ հին հասկացություններին։ Նրանց մոտ, ցավոք, կադրերի հետ տարվող աշխատանքը դեռևս սահմանափակվում է երկու հակիրճ գործողություններով՝ այս կամ այն աշխատողի նշանակումով կամ ազատմամբ։ Բայց դրանք միայն ծայրային նշաններ են՝ կադրային աշխատանքի ամբողջ բարդ պրոցեսի սկիզբն ու վերջը, իսկ աշխատանքի բուն միջուկը, նրա գլխավոր բովանդակությունը՝ կադրերի դաստիարակությունը, աչքաթող է արվում։ Դա մեր աշխատանքում լուրջ և սկզբունքային թերություն է, մենք պետք է այն վերացնենք և որքան շուտ, այնքան լավ։ (Ծափահարություններ)։

Չէ՞ որ կադրերի հետ տարվող աշխատանքի գլխավոր նպատակն ու հիմնական խնդիրը ոչ թե գրաված պոստերից հանելը կամ նրանց պատժելն է, այլ, ընդհակառակն, հետևողական դաստիարակչական աշխատանքի, օբյեկտիվ խստապահանջության, խստության և պահանջկոտության միջոցով այնպիսի գործարար իրադրության ստեղծումը, որի պայմաններում կադրերի ուշադրությունը նվիրված լինի նախաձեռնությանը, ստեղծագործությանը, համարձակությանը, նորարարությանը և աշխատանքի հանձնարարված բնագավառներում ղեկավարման բառ ամենայն կատարելագործմանը, որի դեպքում կուսակցական-պետական կարգապահության նույնիսկ եղակի խախտումը «արտա-



կարգ պատահար» համարվեր շրջկոմի, քաղկոմի կամ այլ մարմնի համար։ (Ծափահարություններ)։

Մեր խնդիրն է՝ վերացնել թույլ տրված բացերը, կադրերի հետ կազմակերպել այդպիսի դրական աշխատանք։

Ե՛լ ավելի լուրջ է կադրերի ռեզերվների պատրաստման հարցը։ Կադրային քաղաքականության մեջ եղած լուրջ թերությունները հանգեցրին այն բանին, որ կուսակցական, սովետական և այլ աշխատանքի շատ օղակներում կադրերը չէին նորացվում կադրային քաղաքականության նորմալ պրոցեսով, չէր ստեղծվում աշխատողների սերունդների անհրաժեշտ, կյանքում բնական հաջորդափոխություն։ Նման իրադրության մեջ խոսք անգամ չկար կադրերի ռեզերվներ պատրաստելու մասին։

Այդ գործի կարևորությունն ու պատասխանատվությունը ակնհայտ է։ Բայց աշխատանքի որոշակի տեղամասեր, ակնառու կերպով ցույց տվեց այդ գործում առաջացող մեծ դժվարությունները՝ ռեզերվների անպատրաստության պատճառով։ Չէ՞ որ խոսքը ոչ թե այս կամ այն աշխատողի պարզ փոխարինման մասին է, փոխարինում՝ հանուն փոխարինման, այլ հասարակական-քաղաքական և տնտեսական կյանքի բոլոր ոլորտներում գործունեության արժանի հաջորդափոխության մասին։

Այդ գործի կարևորությունն ու պատասխանատվությունը ակնհայտ է։ Բայց ակնհայտ է նաև այն, որ քանի որ այդ կենսականորեն կարևոր պրոբլեմները և հարցերը երկար ժամանակ չէին եղել կուսակցական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում, չէին քննարկվել ղեկավար շրջանակում, մենք կանգնեցինք այնպիսի տխուր փաստի առջև, երբ ամբողջ ճյուղերի և աշխատանքի ուղղությունների ղեկավարները, լիներ դա կուսակցական և սովետական մարմիններում, ժողովրդական տնտեսության ու գիտության մեջ, թե աշխատանքի այլ բնագավառներում, երկար ժամանակ, երբեմն ավելի քան տասնյակ տարի, գտնվելով ղեկավարության մեջ, երիտասարդ ռեզերվ չէին նախապատրաստել կադրերի նորմալ տեղաշարժի համար։ Նրանք նույնիսկ հոգ չէին տարել այն մասին, թե ով է լինելու իրենց երիտասարդ փոխարինողը, ում են հանձնելու գալիքի էստաֆետը, ում են վստահելու իրենց գործի բախտը, որը կուսակցության հանձնարարությամբ և վստահությամբ իրենք կատարել էին շատ ու շատ տարիներ, այն սկսելով երիտասարդ հասակում։ Այս ամենը, ընկերներ, տեսանելի է հասարակ, անզեն աչքով։

Միանգամայն պարզ է, որ ակտիվ և արդյունավետ կադրային քաղաքականություն կարելի է վարել ուսումնասիրված, պատրաստի, լայն ռեզերվի առկայության բազայի վրա, իսկ ավելի ստույգ՝ կադրային քաղաքականությունն սկսվում է հենց այդպիսի ռեզերվ ստեղծելու պրոցեսից։ Առանց դրա, ինչպես դա արդեն զգում ենք, մենք մեր առաջընթացի մեջ կսայթաքենք, չենք կարողանա ստեղծել կուտակված ու հաստատուն դարձած փորձի և երիտասարդական եռանդի ու արդիական գիտելիքների ճիշտ զուգորդում։

Ինչպիսի՞ խանգարող հանգամանքներ կան այդ ճանապարհին։

Ամենից առաջ պետք է մեկ անգամ ևս կրկնել, որ շատ ղեկավարներ չըմբռնեցին հանրապետության կուսակցական կազմակերպությունների առջև դրված նոր խնդիրների լույսի տակ կադրերի հարցի առաջադրման ամբողջ սրությունը, չնկատեցին հարցադրման նորությունը, չմշակեցին ռեզերվների պատրաստման աշխատանքի կոնկրետ պլան։ Ղեկավարների մի որոշակի մասի մեջ շարունակում է գոյություն ունենալ ժառանգված այն սխալ պատկերացումը, թե կադրային աշխատանքը, հատկապես ռեզերվների պատրաստման աշխատանքը, միայն կուսակցության Կենտկոմի ֆունկցիան է, այդ պատկերացումը սահմանափակելով ուղղակի նոմենկլատուրային շրջանակով, աչքաթող անելով այն, որ կադրային աշխատանքով պետք է զբաղվեն աշխատանքի բոլոր բնագավառներում, մանավանդ միջին և ստորին օղակներում։

Այնուհետև, գոյություն ունի պարզունակ ու նեղ պատկերացում ռեզերվի մասին։ Շատերին թվում է, թե քանի որ հանրապետությունն ունի բարձրագույն կրթությամբ մեծ թվով աշխատողներ, ապա ուրեմն մեզ մոտ ռեզերվի պատ-

րաստման հարցը ավտոմատիկ կերպով հանվում է օրակարգից, կորցնում իր հրատապությունը։

Իրոք, մենք շատ այդպիսի կադրեր ունենք, և դա, անկասկած, մեր ինտելեկտուալ հարստությունն է։ Խոսքը նրանց հետ տարվող շերտավորված աշխատանքի մասին է, որի միջոցով հնարավոր կլինի որոշել կադրերի կոչումը, հնարավորությունները ու ընդունակությունները և պատրաստել ու աճեցնել նրանց՝ որոշակի ղեկավար աշխատանքի համար։ Իսկ դրա համար, բնականաբար, ժամանակ է պետք։

Յուրաքանչյուր մարմին, կուսակցության Կենտկոմի կադրային քաղաքականությունից ելնող իր իրավասության և ֆունկցիոնալ պարտականությունների սահմաններում, պետք է մշակի, առանց բացառության, աշխատանքի բոլոր տեղամասերի և օղակների համար կադրերի ռեզերվի պատրաստման և սիստեմատիկ համալրման մշտական և անընդմեջ աշխատանքի մանրակրկիտ ծրագիր, ձևեր ու մեթոդներ։ Կուսակցական կոմիտեները պարտավոր են բոլոր մարմինների ու կազմակերպությունների այդ աշխատանքը պահել չթուլացող վերահսկողության տակ։ Կուսակցության Կենտկոմի համապատասխան ճյուղային բաժինները պետք է լինեն յուրաքանչյուր տվյալ ճյուղի համար կադրերի ռեզերվներ պատրաստելու հստակ շերտավորված աշխատանքի կատարման կազմակերպական և ամփոփիչ-կոորդինացիոն կենտրոններ։ Նախապատրաստված ռեզերվի առկայության դեպքում խիստ կնվազեն պրոտեկցիոնիզմի, խնամիականության և պատահականության օբյեկտիվ ու սուբյեկտիվ պայմանները կադրերի ընտրության ժամանակ։ (Ծափահարություններ)։

Կադրերի դաստիարակության գործում մենք պետք է լուրջ ուշադրություն նվիրենք կոմունիստական բարոյականության հարցերին։

Յուրաքանչյուր կուսակցական կազմակերպությունում սերտ համախմբվածության, փոխադարձ հարգանքի և փոխադարձ օբյեկտիվ պահանջկոտության, հայացքների ու գործողությունների լիակատար միասնության իրադրություն ստեղծելու գործին նպաստում է ղեկավար աշխատողների կոմունիստական բարձր բարոյականությունը։ Մյուս կողմից, միայն պահանջկոտության իրադրությունն է ի հայտ բերում աշխատողների կոմունիստական բարոյականության աստիճանը, նրանց մեջ բարոյաքաղաքական այդ կարևոր հատկության բացակայությունը կամ առկայությունը։ Այդ բանում մենք համոզվեցինք, երբ անցած տարի հարկ եղավ լուծել մի շարք կադրային հարցեր։

Բանն այն է, որ Կենտկոմի հունվարյան պլենումի որոշումների ջերմ հավանության ընդհանուր ֆոնի վրա ի հայտ եկան նաև այնպիսի աշխատողներ, որոնք այդ որոշումները ողջունեցին, ինչպես պարզվեց, սպառողական դիրքերից, անձնական հարցերի լուծման տեսանկյունից։ Իսկ երբ դա, արդարացիորեն, տեղի չունեցավ, նրանք, 180 աստիճանի շրջադարձ կատարելով, ինքնակոչ կերպով իրենց վրա վերցրին պլենումի որոշումների և դրանք կենսագործողների խիստ և «ուղղափառ» ընդդիմախոսների ֆունկցիաները, անզուսպ և ամեն կերպ պախարակելով դրանց։

Զախողված և տույժի ենթարկված այլ առանձին աշխատողներ, զգալով, որ ներման մասին իրենց խնդրանքները չեն բավարարվում, նույնպես դառնում են ընդդիմախոսներ և, փորձելով ոմանց ահաբեկել հին, մաշված, կեղտոտ եղանակներով, ցինիկաբար հասկանալ են տալիս, թե իբր զգույշ եղեք, ես կարող եմ ձեր դեմ ելույթ ունենալ թունդ բռնկման պահին, չխորհելով այն մասին, որ այլևս ժամանակներն այն չեն և ամբիոններն ու լսարաններն էլ նույնպես այն չեն։ (Ծափահարություններ)։

Առանձին կոմունիստներ և աշխատողներ արդարացի պատիժ կրելուց և գրաված պաշտոններից հանվելուց հետո փոխանակ համապատասխան հետևություններ անելու պրակտիկ աշխատանքում իրենց արդարացնելու, բռնում են այն ղեկավար աշխատողների հասցեին քննադատամոլության և զրպարտության ուղին, ովքեր բացահայտում են նրանց զանցանքները, կառչելով այդ ղեկավարների աշխատանքի մի քանի ոչ սկզբունքային բնույթի թերություններից։



Կուսակցության Կենտկոմը ամենայն օբյեկտիվությամբ և ուշադրությամբ է վերաբերում այդպիսի փաստերին։ Զրպարտության համար պատին սեղմված լինելով և խեղդվողի պես կառչելով ծղոտից. առդարության այդ «ասպետները» հայտարարում են. «Մենք կատարում ենք Կենտկոմի հունվարյան պլենումի ցուցումները. չէ՞ որ նա կոչ է անում բացահայտել թերությունները»։ Այստեղ մենք պետք է սթափ գտնվենք՝ թույլ չտալու համար, որ նման մարդիկ չարահեն կուսակցության Կենտկոմի պլենումի ղեկավար ցուցումները ընդդեմ հենց պլենումի գաղափարների։ Քննադատության զենքը պետք է գտնվի մաքուր ձեռքերում և օգտագործվի ազնիվ նպատակներով։ (Ծափահարություններ)։

Կարելի՞ էր այս բանով չզբաղեցնել համագումարի ուշադրությունը, բայց, քանի որ նման մարդկանց հաջողվել է իր ժամանակին պղտորել մեր կուսկազմակերպության մաքուր ջուրը, օգտագործելով այն մարդկանց թույլ և խոցելի տեղերը, ովքեր վաղուց պետք է նրանց ուշքի բերեին և կարգի հրավիրեին, ապա պետք է հայտարարել, որ այդպիսիները չեն, որ պետք է գնահատեն իրականացվող աշխատանքը։

Հունվարյան պլենումի դրույթների իրականացման գործում մեր թերությունների քննադատությունը բոլոր այն կոմունիստների կողմից, ովքեր իրոք մտահոգված են դրանց արագ վերացմամբ և հանդես են գալիս կուսակցական սկզբունքայնության դիրքերից, մենք գնահատում ենք և կգնահատենք որպես հոգատարություն և անկեղծ ցանկություն այն բանի, որ հանրապետության կուսակցական կազմակերպության գործերը որքան կարելի է լավ ընթանան։ (Ծափահարություններ)։

Ընկերնե՛ր։ Ինչպես մեզ սովորեցնում է կուսակցությունը, կադրերի աճի ու դաստիարակության, ամբողջ աշխատանքի ճիշտ կազմակերպման անհրաժեշտ պայմանը կոլեկտիվ ղեկավարման զուգորդումն է հանձնարարված գործի համար անձնական պատասխանատվության հետ։ Ղեկավարման կոլեգիալ հիմունքների զարգացման հետ մեկտեղ անհրաժեշտ է առաջնորդվել կառավարման հիմնական սկզբունքներից մեկով, որը Վ. Ի. Լենինի ձևակերպմամբ, այսպես է հնչում. «Որոշակի անձը ամբողջովին պատասխանատու է որոշակի աշխատանքի կատարման համար»։

Կոլեգիալության հետագա զարգացումը և կադրերի անձնական պատասխանատվության ամրապնդումը, կադրերի նկատմամբ վստահության ու հարգանքի մթնոլորտի հաստատումը, սկզբունքային օբյեկտիվ խստապահանջության զուգորդմամբ, հանգեցնում է գործարար, ընկերական իրադրության ստեղծման։ Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը նշում է, որ «կադրերի կարգապահության և պատասխանատվության բարձրացումը մեր կարևորագույն խնդիրներից մեկն է, ընդ որում, մենք նկատի ունենք ոչ թե վախի, ոչ թե կոպիտ վարչարարության մեթոդների վրա կառուցված կարգապահությունը, որը մարդկանց զրկում է վստահությունից, ծնում է ինքնաապահովագրում և անաղնվություն։ Խոսքը վերաբերում է մարդկանց բարձր գիտակցականության և պատասխանատվության վրա կառուցված կարգապահությանը։ Ինչ վերաբերում է այն աշխատողներին, ովքեր խախտում են կարգապահությունը, հետևություններ չեն անում քննադատությունից, սխալ վարքագիծ են ցուցաբերում, ապա դրանց նկատմամբ պետք է ձեռնարկվեն անհրաժեշտ միջոցներ։ Մեզանում ղեկավար պոստերը ոչ ոքի առհավետ չեն ամրացվում»։ (Ծափահարություններ)։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, կուսակցական կոմիտեները, հանրապետության բոլոր կոմունիստները այսուհետև ևս կառաջնորդվեն այս ցուցումներով, որոնք մարմնավորում են կուսակցական կյանքի լենինյան նորմաների իսկական իմաստը։

Ընկերնե՛ր։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, քաղկոմների ու շրջկոմների կողմից կատարվող կուսակցական-կազմակերպական աշխատանքի կարևորագույն, վճռական տեղամասերից մեկը սկզբնական կուսակցական կազմակերպությունների ղեկավարումն է։ Կուսակցության կազմակերպական կառուցվածքի սիստեմում սկզբնական կուսակցական կազմակերպությունները այն նախնական օղակն են, որտեղ համակենտրոնացված և խտացված ձևով,

իրենց ամբողջ բազմազանությամբ և բոլոր տարատեսակություններով, արտացոլվում են կուսակցության հասարակական-քաղաքական, ներկուսակցական և արտադրական կյանքը, նրա հաջողություններն ու թերությունները: Հանրապետությունում կա 5001 սկզբնական կուսակցական կազմակերպություն՝ 388-ով ավելի, քան Հայաստանի կոմկուսի XXV համագումարի նախօրյակին: Սկզբնական կուսակցական կազմակերպությունների աշխատանքում, անշուշտ, շատ ու շատ դրական բան կա: ՍՄԿԿ քաղաքականության և սոցիալ-տնտեսական ծրագրի կենսագործման ասպարեզում մեր հանրապետության ձեռք բերած հաջողությունների մեջ անգնահատելի է սկզբնական կուսակցական կազմակերպությունների ավանդը:

Կուսակցական կազմակերպությունների աշխատանքի մակարդակի բազմակողմանի բարձրացման, հասարակական-քաղաքական կյանքի բոլոր կողմերի վրա նրանց ազդեցության ուժեղացման և կոմունիստների ավանգարդային դերի բարձրացման համար հսկայական նշանակություն ունեցավ կուսակցական փաստաթղթերի փոխանակումը, որն անցկացվեց ՍՄԿԿ XXIV համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի 1973 թվականի մայիսյան պլենումի որոշումներին համապատասխան:

Մեզ մոտ սկզբնական կուսակցական կազմակերպությունների գերակշռող մեծամասնությունը իրոք կոլեկտիվների կորիզն է, տնտեսական և կուլտուրական շինարարության բնագավառում կուսակցության պահանջների լիակատար իրականացման, արտադրության բարձր արդյունավետության, գիտատեխնիկական առաջադիմության զարգացման, աշխատանքի արտադրողականության, թողարկվող արտադրանքի և ամբողջ աշխատանքի որակի բարձրացման համար պայքարի և սոցիալիստական մրցության նախաձեռնողն ու կազմակերպիչը, մարքս-լենինյան աշխարհայացքի, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով, սովետական սոցիալիստական ապրելակերպի ոգով կոլեկտիվների բոլոր անդամների դաստիարակիչն է: Դրանում է մեր ուժը, մեր հաջողությունների երաշխիքը:

Սկզբնական կուսակցական կազմակերպությունների աշխատանքի բարելավմանն էր նվիրված Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1973 թվականի նոյեմբերյան պլենումը, որտեղ հանգամանորեն քննության առնվեցին նրանց աշխատանքի բոլոր տեսանկյունները:

Բայց մեր հասարակական-քաղաքական կյանքի այդ կարևոր կորիզն է՛լ ավելի ամրապնդելու նպատակով մենք պարտավոր ենք այսօր համագումարում մի անգամ ևս վերադառնալ նրանց գործունեության մեջ եղած թերություններին: Բանն այն է, որ քիչ չէ այն սկզբնական կուսկազմակերպությունների թիվը, որոնք դեռևս լրիվ պատասխանատվություն չեն կրում աշխատանքի տվյալ բնագավառում տիրող գործերի վիճակի համար, մարտունակ չեն, դեռևս գտնվում են պասսիվ-հայեցողական դիրքերում և խիստ պատասխանատվության չեն կանչում ու պատշաճ կարգի չեն հրավիրում այն կոմունիստներին, որոնք չեն ապահովում իրենց ավանգարդային դերը կամ դառնում են կուսակցական և պետական կարգապահության խախտողներ: Դա թուլացնում է կոմունիստների պատասխանատվությունն իրենց կուսակցական կազմակերպության առջև: Բայց չէ՞ որ կուսակցության առջև կոմունիստների բարձր պատասխանատվությունը սկսվում է հենց այդ սկզբնական օղակից, որտեղ նրանք հաշվառման մեջ են:

Արդյոք շա՞տ բան են արել նոր մնացող արդյունաբերական ձեռնարկությունների, կառույցների, կոլտնտեսությունների և սովխոզների սկզբնական կուսկազմակերպությունները գործերի վիճակը շտկելու, պետական առաջադրանքները լրիվ կատարելու, տնտեսական գործունեությունը բարելավելու համար: Արդյոք շա՞տ բան են արել վարչական մարմինների, առևտրի, հասարակական սննդի և կենցաղային սպասարկման ձեռնարկությունների սկզբնական կուսակցական կազմակերպությունները կոմունիստներին և կոլեկտիվներին պայքարի մոբիլիզացնելու ամեն տեսակ չարաշահումների և խախտումների դեմ, որոնք կատարվում են հիշյալ կոլեկտիվներում և որոնց վրա սուր



կերպով ուշադրություն հրավիրեց Կենտկոմի հունվարյան պլենումը: Ցավոք, պետք է ասել, որ առայժմ՝ ոչ:

Կամ մի ուրիշ բան: Արդյոք մեզանում շա՞տ են փաստերը, երբ այս կամ այն սկզբնական կազմակերպությունը խիստ պատասխան է պահանջել այն կոմունիստից, որի որդին պորտաբույծ է, զբաղվում է խուլիգանությամբ, սպեկուլյացիայով կամ թույլ տալիս հակահասարակական արարքներ:

Եվ, վերջապես, այն մասին, թե ինչպես որոշ սկզբնական կուսակցական կազմակերպություններ գործնական հետևություններ չեն արել հունվարյան պլենումի ցուցումներից, վկայում են դարձյալ այն փաստերը, երբ սոցիալիստական սեփականության հափշտակության, պետական միջոցների յուրացման և նման այլ զանցանքների համար կուսակցությունից վտարված նախկին կոմունիստների բողոքարկման գործերը քննության առնելիս, սկզբնական կուսակազմակերպություններից միջնորդություններ են ստացվում նրանց կուսակցության շարքերում վերականգնելու մասին: Եվ այս ամենը՝ հունվարյան պլենումից հետո: Ինչպես ասում են, մեկնաբանություններն ավելորդ են:

Կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները պարտավոր են արմատապես բարելավել սկզբնական կուսակցական կազմակերպությունների ղեկավարումը, մշակել և իրականացնել շերտավորված աշխատանքի ծրագիր սկզբնական կուսակցական կազմակերպությունների յուրաքանչյուր խմբի հետ, նկատի ունենալով նրանց գործերի վիճակը, պայմանները և անմիջական խնդիրները: Անհրաժեշտ է, որ կարգապահության, նախաձեռնության, գործարարության, ստեղծագործության և պատասխանատվության ընդհանուր շղթան միատեսակ ամուր ձգված լինի բոլոր օղակներում, թուլացումներ չլինեն այդ շղթայի ոչ մի օղակում, մանավանդ՝ սկզբնականում:

Պետք է ուշադրություն դարձնել ևս մի ընդհանուր թերության վրա: Բանն այն է, որ առաջվա պես մի ամբողջ շարք կուսակցական կազմակերպությունների, կուսակցական կոմիտեների ու նրանց ղեկավարների աշխատանքի պրակտիկայում անցյալում թույլ տրված սխալների և ղեկավարման սկզբունքների աղավաղումների մասին խոսակցություններն ու դիտողությունները ավելի շատ են, քան դրանք շտկելու և թույլ չտալու ուղղությամբ ձեռնարկված կոնկրետ քայլերը:

Չէ՞ որ Կենտկոմի հունվարյան պլենումը համակողմանիորեն վերլուծեց մեր թույլ տված սխալները և ուղղություն տվեց դրանց վերացման համար: Այդ մասին ասվեց հանրապետության բոլոր կոմունիստներին և աշխատավորներին: Այժմ գործը արգելակվում է ոչ այն պատճառով, որ մարդիկ չգիտեն, թե ինչ է պահանջում Կենտկոմը, այլ պրակտիկ գործողությունների անբավարարության պատճառով: Հետևաբար բոլոր կուսակցական կոմիտեները պարտավոր են կտրուկ շրջադարձ կատարել դեպի մեծ ու կոնկրետ աշխատանքը, որի ընթացքում պետք է ավելի քիչ բացականչություններ արվեն հունվարյան պլենումի մասին, բայց ավելի շատ գործեր կատարվեն նույն պլենումի ոգով, որի հասատատուն ուղուց մենք երբեք չենք շեղվի: (Ծափահարություններ):

Ամբողջ ասվածից բխում է, որ մեր խնդիրն է ուշադրությունը սրել կուսակցական-կազմակերպական աշխատանքի հետագա վերակառուցման, աշխատանքի՝ կուսակցական ցուցումներին և ժամանակի ոգուն լրիվ համապատասխանող ընդհանուր ոճի կատարելագործման վրա, մշակել և կիրառել աշխատանքի այնպիսի կարգ, որի ժամանակ համապատասխան մարմինների բոլոր ղեկավարները և նրանց ապարատն ունենան դիրեկտիվ մարմինների յուրաքանչյուր որոշման և սեփական որոշումների կատարման կազմակերպման հստակ մշակված պլան, որպեսզի կատարման ստուգումը թերությունների ուշացած արձանագրումից վերածվի ընդունված որոշումների ժամանակին կենսագործումն անընդմեջ, կրկնում եմ, անընդմեջ ապահովելու աշխատանքի կուռ սիստեմի և հստակ պրոցեսի, ապահովվի ընդունված որոշումների կատարման համար համապատասխան պաշտոնատար անձանց պատասխանատվության լիակատար հաջորդականությունը: (Ծափահարություններ):

Ընկերնե՛ր: XXV համագումարից հետո անցած ժամանակամիջոցում Հա-

յաստանի կոմունիստական կուսակցությունը շարունակում էր իր շարքերը համալրել լավագույն մարդկանցով, առավելապես առաջավոր բանվորների, կոլտնտեսականների և մտավորականության ներկայացուցիչների թվից: Հայաստանի կոմկուսը աճել է 12.606 մարդով և այժմ իր շարքերում ունի 142.959 կոմունիստ, այդ թվում ՍՄԿԿ 137.957 անդամ և անդամության 5.002 թեկնածու: Բոլոր կոմունիստների 66,1 տոկոսը աշխատում է նյութական արտադրության ոլորտում: Հանրապետության կուսակցական կազմակերպության կազմի 36 տոկոսը բանվորներ են, 20,6 տոկոսը՝ կոլտնտեսականներ, 43,4 տոկոսը ծառայողներ են: Կոմունիստների ավելի քան 70 տոկոսն ունի բարձրագույն, թերի բարձրագույն և միջնակարգ կրթություն:

Եթե Հայաստանի կոմկուսի XXIV և XXV համագումարների միջև ընկած ժամանակաշրջանում ՍՄԿԿ անդամության թեկնածու էր ընդունվել 20.021 մարդ, ապա XXV համագումարից հետո ընդունվել է 15.893 մարդ: Դա բացատրվում է կուսակցության շարքերն ընդունելիս անհատական և խիստ ընտրություն կատարելու մասին ՍՄԿԿ XXIV համագումարի և կուսակցության կանոնադրության պահանջների առավել ճշտիվ կատարմամբ: Թեկնածու ընդունվածների թվում բանվորները կազմել են համապատասխանաբար 46,3 և 57,7 տոկոս: Իսկ ընդամենը հաշվետու ժամանակաշրջանում ընդունված բանվորներն ու կոլտնտեսականները կազմել են 65,9 տոկոս:

Հանրապետության կուսակցական կազմակերպությունները պետք է մշտապես բարելավեն կուսակցության մեջ ընդունելության գործը, հոգատարություն ցուցաբերեն երիտասարդ կոմունիստների դաստիարակության և նրանց գաղափարա-քաղաքական աճի նկատմամբ:

Ընկերնե՛ր: Քննադատության և ինքնաքննադատության բոլոր ամենայնի զարգացումը կուսակցությունը միշտ համարել է ներգործուն միջոց աշխատանքի թերությունների դեմ մղվող պայքարում: Լենինյան սկզբունքային դրույթները քննադատության և ինքնաքննադատության մասին հետագա զարգացում ստացան ՍՄԿԿ համագումարների, կուսակցության Կենտկոմի պլենումների նյութերում, կուսակցական մյուս փաստաթղթերում, մասնավորապես «Տամբովի մարզային կուսակցական կազմակերպություններում քննադատության և ինքնաքննադատության վիճակի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի վերջերս ընդունած որոշման մեջ: Այս որոշման կատարման ընթացքը մշտապես գտնվում է ՀԿԿ Կենտկոմի ուշադրության կենտրոնում:

Կուսակցությունն ուսուցանում է, որ կոմունիստների քննադատական ճիշտ դիտողությունների նկատմամբ ուշադիր և լուրջ վերաբերմունքը, յուրաքանչյուր կուսակցական կազմակերպությունում բարյացակամության, ստեղծարար աշխատանքի իրադրության ապահովումը նպաստում են կոմունիստների քաղաքական և աշխատանքային ակտիվության խիստ բարձրացմանը, նրանց մեջ զարգացնում են որպես նորի, առաջավորի նախաձեռնողներ հանդես գալու ձգտում:

Պետք է նշել, որ քաղաքային, շրջանային կոմիտեները, սկզբնական կուսակցական կազմակերպությունները նկատելիորեն վերակառուցել են իրենց աշխատանքը այդ ուղղությամբ: Նրանցից շատերում բարենպաստ պայմաններ են ստեղծվել կարծիքների լայն և ազատ փոխանակության համար, թերությունների քննադատությունը ավելի կոնստրուկտիվ ու կոնկրետ է դարձել, ավելի մեծ ուշադրություն է նվիրվում կոմունիստների քննադատական դիտողություններին և առաջարկություններին, դրանց իրականացման միջոցառումների մշակմանը: Սակայն մենք պետք է խոստովանենք, որ դեռևս ոչ բոլոր կուսակցական կոմիտեներն են կատարում ՍՄԿԿ XXIV համագումարի պահանջները՝ քննադատության և ինքնաքննադատության համակողմանի զարգացման, կոմունիստների ակտիվության և նախաձեռնության բարձրացման մասին:

«Քննադատության և ինքնաքննադատության լայն զարգացումը,— նշում է ընկ. Լ. Ի. Բրեժնևը,— կուսակցական կազմակերպության քաղաքական առողջության, կուսակցության հանդեպ, ժողովրդի հանդեպ ունեցած իր պարտքի ճիշտ ըմբռնման նշան է»: Այս սկզբունքային դրույթը այսուհետև ևս պետք է



ընկած լինի հանրապետության բոլոր կուսակցական կազմակերպությունների և յուրաքանչյուր կուսակցական կոմիտեի կուսակցական-կազմակերպական աշխատանքի հիմքում:

Ընկերնե՛ր: Մեր հասարակության քաղաքական կառուցվածքում հատուկ տեղ է պատկանում աշխատավորների դեպուտատների սովետներին, որոնք կազմում են սոցիալիստական պետության հիմքը, նրա դեմոկրատական բնույթի առավել լիակատար մարմնավորումը:

Անցյալ տարվա հունիսին տեղի ունեցան Հանրապետության Գերագույն սովետի և տեղական սովետների՝ քաղաքային, շրջանային, գյուղական և ավանային սովետների ընտրությունները: Սովետներում ընտրվեց 26.640 դեպուտատ, որոնց ավելի քան 50 տոկոսը բանվորներ ու կոլտնտեսականներ են: Դեպուտատների կազմում կան ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի, գիտության և կուլտուրայի ներկայացուցիչներ: Սովետների դեպուտատների կազմը պարբերաբար նորացվում է, նրանց աշխատանքի մեջ ներգրավվում են աշխատավորների նորանոր լայն խավեր: Անցյալ տարի առաջին անգամ ընտրվեցին հանրապետության տեղական սովետների դեպուտատների ավելի քան 35 տոկոսը, իսկ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի 315 դեպուտատներից 221-ը նորընտիր դեպուտատներ են:

Եթե ասենք, ամբողջությամբ վերցրած, ապա մեր հանրապետությունում սովետների գործունեությունը ավելի նպատակասլաց և բազմակողմանի է դարձել, դեպուտատական հանձնաժողովները, ստվարաթիվ ակտիվիստները մեծ և օգտակար աշխատանք են կատարում: Պետք է նշել նաև, որ դեպուտատների մեծամասնությունը բարձր պատասխանատվությամբ է վերաբերվում իր պարտականություններին: Աշխատավորների դեպուտատների սովետների ստատուսի մասին ՍՍՀՄ Գերագույն սովետի կողմից օրենքի ընդունումը է՛լ ավելի բարձրացրեց դեպուտատների հեղինակությունն ու ակտիվությունը:

Մենք պետք է այսուհետև ևս բոլոր ամենայնի բարելավենք սովետների և նրանց ապարատների գործունեությունը: Դա անհրաժեշտ է առավել ևս այն պատճառով, որ հանրապետության քաղաքային, շրջանային, գյուղական և ավանային շատ սովետների, նրանց գործկոմների աշխատանքում լուրջ թերություններ կան: Աշխատավորների շատ կշտամբանքների տեղիք են տալիս քաշքշուկը, քաղաքացիների նկատմամբ հաճախ ցուցաբերվող կոպտությունը, նրանց պահանջների նկատմամբ բյուրոկրատական վերաբերմունքը: Թույլ են տրվում նաև չարաշահումներ և խախտումներ, հատկապես բնակարանների հաշվառման ու բաշխման գործում: Այդպիսի խախտումներ բացահայտվեցին մասնավորապես Երևանի քաղաքային, Շահումյանի, Մասիսի շրջանային, Էջմիածնի քաղաքային և մի շարք այլ սովետների գործկոմներում:

Շատ ձեռնարկությունների, հիմնարկների ու կազմակերպությունների տնտեսական ղեկավարներ և այլ միութենական կազմակերպություններ, շրջանային ու քաղաքային սովետների գործկոմների, ինչպես նաև կուսակցական մարմինների բացահայտ թողտվությամբ, թույլ են տվել բնակելի ֆոնդի բաշխման սահմանված կարգի զանազան խախտումներ, դրանով իսկ առաջացնելով աշխատավորների արդարացի դժգոհությունը:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը ստիպված էր միջամտել այդ գործին, կարգի հրավիրել և խիստ պատասխանատվության կանչել մի շարք աշխատողների: Սակայն արվածը դեռևս անբավարար է: Կուսակցական և սովետական մարմինները պետք է շարունակեն աշխատանքը բնակարանների բաշխման վիճակի կարգավորման ուղղությամբ:

Կուսակցության քաղկոմները, շրջկոմները պետք է բարձրացնեն սովետների ապարատներում աշխատող կոմունիստների պատասխանատվությունը, ձեռնարկեն այսուհետև ամեն տեսակ խախտումներ ու չարաշահումներ բացառող գործուն միջոցներ: Ժամանակն է տեղական սովետների ապարատները ազատել բյուրոկրատներից ու անարժան մարդկանցից:

Մեր խնդիրն է աշխատավորների դեպուտատների բոլոր սովետների աշ-

խատանքը բարձրացնել կուսակցության այսօրվա պահանջների մակարդակին։

Ձեռնարկությունների, կառույցների, հիմնարկների կոլեկտիվների արտադրական ու հասարակական կյանքում, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով մարդկանց դաստիարակելու գործում կարևոր դեր են խաղում արհմիությունները։

Հաշվետու ժամանակաշրջանում արհմիությունների աշխատանքը ավելի նպատակասլաց, ավելի բազմակողմանի դարձավ։ ՀԱՄԽ-ը, արհմիությունների հանրապետական ու տեղական կոմիտեները որոշակի աշխատանք են կատարել սոցիալիստական մրցության կազմակերպումը կատարելագործելու, մասսաների աշխատանքային ակտիվությունը բարձրացնելու ուղղությամբ։ Այժմ մրցությանը մասնակցում է ավելի քան 750 հազար մարդ։ Մոտավորապես 103 հազար աշխատավորներ արժանացել են «Կոմունիստական աշխատանքի հարվածային» կոչման, 4.900 բրիգադների շնորհվել է կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչում։ Մեծ աշխատանք է կատարվում առաջավոր փորձի ուսումնասիրման ու տարածման, գյուտարարների և ռացիոնալիզատորների շարժման, ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացման, աշխատավորների հանգստի և ժամանցի կազմակերպման ուղղությամբ։

Դրա հետ մեկտեղ արհմիութենական կազմակերպությունների գործունեության մեջ մի շարք թերություններ կան։ Արհմիութենական շատ կազմակերպությունների աշխատանքում պակասում է հաստատակամությունը, ակտիվությունը՝ աշխատավորների օրինական շահերի պաշտպանության գործում։ Ձեռնարկությունների առանձին ղեկավարներ, արհմիությունների լռելյայն համաձայնությամբ, առանց անհրաժեշտության արտաժամյա աշխատանք են պարտադրում, խախտում աշխատանքային օրենսդրությունը։ Որոշ ձեռնարկություններում չեն ստեղծվել աշխատանքի ու կենցաղի անհրաժեշտ պայմաններ, վատ է կազմակերպված անվտանգության տեխնիկան։ Արհմիութենական կազմակերպությունները միջոցներ չեն ձեռնարկում նման աննորմալ երևույթները վերացնելու համար։

Արհմիությունների գործունեության մեջ դեռևս շատ է ձևամոլությունը՝ սոցիալիստական մրցության կազմակերպման հարցերում, խրախուսման նյութական և բարոյական խթանների կիրառման գործում։

Որոշ արհմիութենական կազմակերպություններ քիչ են հոգ տանում աշխատավորների կուլտուր-կենցաղային պահանջմունքները բարելավելու մասին։ Թույլ են զբաղվում կոլեկտիվների սոցիալական պլանների մշակման և կենսագործման գործով։

Հանրապետության կուսակցական կազմակերպությունները պետք է ըստ ամենայնի բարձրացնեն արհմիությունների դերը, նրանց աշխատանքի մակարդակը՝ կուսակցության պահանջներին համապատասխան, ուժեղացնեն պահանջկոտությունը արհմիություններում աշխատող կոմունիստների նկատմամբ։

Լենինյան կոմերիտմիությունը միշտ եղել և մնում է կուսակցության ակտիվ օգնականը, նրա հուսալի ռեզերվը։ ՀԿԿ Կենտկոմը բազմիցս լսել է կոմերիտմիության նկատմամբ կուսակցական ղեկավարությունը բարելավելու հարցերը։

Երիտասարդության կոմունիստական դաստիարակության ուղղությամբ մեծ աշխատանք է կատարում Հայաստանի կոմերիտմիությունը, որն այժմ իր շարքերում միավորում է ավելի քան 376 հազար պատանիներ և աղջիկներ։ Տնտեսական և կուլտուրական շինարարության բոլոր ասպարեզներում կոմերիտականները ցուցաբերում են իրենց ամենաակտիվ մասնակցությունը։

ՍՄԿԿ XXV համագումարը արժանավայել դիմավորելու համար ծավալված համաժողովրդական սոցիալիստական մրցության ընթացքում հանրապետության 11 հազար պատանիներ ու աղջիկներ ժամկետից շուտ են ավարտել անձնական հնգամյա առաջադրանքները։ Հանրապետության կոմերիտմիությունը ակտիվորեն մասնակցում է երկրի շատ հարվածային կառույցների, հատկապես Բայկալ—Ամուր մայրուղու շինարարությանը։



Կոմերիտական կազմակերպությունները ակտիվորեն օգնում են կուսակցական կազմակերպություններին՝ արտադրանքի բարձր որակի, խնայողության համար, անտնտեսվարության, շռայլության դեմ մղվող պայքարում։ Այս տեսակետից գովեստի է արժանի «Կոմերիտական լուսարձակի» աշխատանքը։

Մի շարք նախաձեռնություններով հանդես են եկել գյուղի կոմերիտականները, որոնք ակտիվորեն են մասնակցում գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման, բարձր բերքի և անասնապահության բարձր մթերատվության համար մղվող պայքարին։

Կուսակցական կազմակերպությունները ուժեղացրել են կոմերիտմիության ղեկավարումը։ Աճել է կուսակցական կորիզը կոմերիտմիության մեջ։ Ներկայումս ավելի քան 10 հազար երիտասարդ կոմունիստներ ակտիվ աշխատանք են կատարում երիտասարդությանը կոմունիստական իդեալների նկատմամբ հավատարմության, սովետական հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու ասպարեզում։ Կուսակցության քաղկոմների և շրջկոմների, սկզբնական կուսակցական կազմակերպությունների խնդիրն է՝ այսուհետև ևս կատարելագործել կոմերիտմիության ղեկավարումը, օգնել նրան վերացնելու թերությունները, որոնք դեռևս քիչ չեն կոմերիտական կազմակերպությունների աշխատանքում։

Արդի պայմաններում բացառիկ կարևոր նշանակություն է ստանում կատարման վերահսկողությունը և ստուգումը։

Ժողովրդական վերահսկողության մարմինները դիտելով որպես աշխատավորների մասսայական, մշտապես գործող վերահսկողության պրակտիկ կազմակերպիչներ, հանրապետության կուսակցական կազմակերպությունները սկսել են նրանց հնարավորություններն ավելի լրիվ օգտագործել՝ ուժեղացնելու կատարման ստուգումը տնտեսական և կուլտուրական շինարարության բոլոր տեղամասերում, ավելի խորամուխ լինելու նրանց աշխատանքի մեջ, համակողմանի օգնություն և աջակցություն ցույց տալու նրանց աշխատանքում, զանազան միջոցառումների, առաջարկությունների և հանձնարարականների իրականացման գործում, որը դրական արդյունքներ է տալիս։

Սակայն պետք է նշել, որ ժողովրդական վերահսկողության մարմինների գործունեության մեջ լուրջ թերություններ կան, որոնց վերացման համար պետք է հիմնավորապես աշխատեն ինչպես Հայկական ՍՍՀ ժողովրդական վերահսկողության կոմիտեն, այնպես էլ կուսակցական կազմակերպությունները։

Դեռևս շատ բան պետք է արվի, որ ժողովրդական վերահսկողության մարմինների աշխատանքը ավելի լրիվ համապատասխանի ժամանակի ոգուն, այն պահանջներին ու խնդիրներին, որ նրանց առջև դրել են կուսակցությունն ու կառավարությունը։

ՍՄԿԿ Կենտկոմը վերջերս ընդունեց կարևոր որոշում «Լատվիական ՍՍՀ-ում ժողովրդական վերահսկողության մարմինների կուսակցական ղեկավարման մասին»։ Որոշման մեջ բովանդակող դրույթներն ու հետևությունները լիովին վերաբերում են նաև մեր հանրապետությանը, և այդ որոշումը գործողության ուղեցույց պետք է լինի բոլոր կուսակցական կազմակերպությունների, ժողովրդական վերահսկողության մարմինների համար։

Ընկեր պատգամավորներ։

Հայաստանի կոմկուսի XXVI համագումարին ներկայացված հաշվետու զեկուցումը մոտեցավ իր ավարտին։ Կենտկոմը զեկուցեց մեր հաջողությունների ու թերությունների մասին։ Տարակույս չկա, որ համագումարը այս զեկուցումը օբյեկտիվորեն ու սկզբունքորեն կքննարկի, գործարար կերպով ու քննադատորեն կվերլուծի հաշվետու ժամանակաշրջանում հանրապետության կուսակցական կազմակերպության գործունեությունը, կորոշի թերությունների և վրիպումների վերացման, մեր նվաճումների բազմապատկման կոնկրետ ուղիները։

Մեր համագումարը, արտացոլելով կուսակցական կազմակերպություններում և կոլեկտիվներում տիրող ոգևորությունը, քաղաքական և աշխատան-

քային խանդավառությունը, կարտահայտի հանրապետության ամբողջ կուսակցական կազմակերպության և աշխատավորության անհողդողդ պատրաստակամությունը՝ անշեղորեն կենսագործելու ՍՄԿԿ առաջիկա XXV համագումարի որոշումներն ու դիրեկտիվները, Հայաստանի բոլոր կոմունիստներին, բանվորներին, կոլտնտեսականներին և մտավորականությանը աշխատանքային մեծագործությունների մարտական կոչ կուղղի ի փառս մեր Մեծ Հայրենիքի՝ ՍՍՀ Միության: (Ծափահարություններ):

Արտահայտելով Հայաստանի կոմունիստների, ամբողջ հայ ժողովրդի կամքը, համագումարը կհավաստի նրանց անսահման նվիրվածությունը Լենինի մեծ դրոշին, մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ ուսմունքին, Սովետական Միության կոմունիստական կուսակցության գործին: (Ծափահարություններ):

Մեր համագումարը կրկին ու կրկին կհավաստի հանրապետության բոլոր կոմունիստների այն նշանաբանը, որ Հայաստանի կոմկուսը եղել է, կա և միշտ կլինի Սովետական Միության կոմունիստական կուսակցության մարտական, տոկուն և կուռ համախմբված ջոկատներից մեկը, միշտ անսահմանորեն նվիրված կլինի նրա շտաբին՝ ՍՄԿԿ լենինյան Կենտրոնական կոմիտեին: (Ծափահարություններ):

Կեցցե՜ Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը՝ անմահ Լենինի կուսակցությունը, մեր ամբողջ ժողովրդի մարտական ավանգարդը: (Բուռն, երկարատև ծափահարություններ, բոլորը ոտքի են կանգնում):

---

## ՍՄԿԿ Կենտկոմում, ՍՍՀՄ Մինիստրների սովետում, ՀԱՄԿԽ-ում և ՀամԼԿԵՄ Կենտկոմում

# ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՈՐԱԿԸ ԲԱՐՁՐԱՑՆԵԼՈՒ, 1976 ԹՎԱԿԱՆԻ ԺՈՂՈՎՐԴԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՊԼԱՆԸ ՀԱՋՈՂՈՒԹՅԱՄԲ ԿԱՏԱՐԵԼՈՒ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Իններորդ հնգամյակում մեր երկիրը զգալի առաջընթաց քայլ կատարեց կոմունիստական շինարարության խնդիրների լուծման ճանապարհին: Է՛լ ավելի զարգացան ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը, էապես բարձրացավ սովետական մարդկանց կյանքի նյութական և կուլտուրական մակարդակը: Այդ նվաճումները բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, մտավորականության, ամբողջ սովետական ժողովրդի անձնվեր աշխատանքի արդյունքն են, կուսակցական, սովետական, տնտեսական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների կազմակերպչական և քաղաքական աշխատանքի արդյունքը: Արտադրական պլանների կատարման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, աշխատանքի մյուս որակական ցուցանիշների բարելավման, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակման գործում կարևոր դեր խաղաց սոցիալիստական մրցությունը, որը հասավ նոր, ավելի բարձր աստիճանի:

Քաղաքական և աշխատանքային մեծ խանդավառության մթնոլորտում սկսվեց տասներորդ հնգամյակը: ՍՄԿԿ XXV համագումարը աշխատանքային նոր նվաճումներով դիմավորելու կուսակցության կոչին ի պատասխան, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի աշխատողները ակտիվորեն ներգրավվել են արտադրության արդյունավետությունը և աշխատանքի որակը բարձրացնելու, 1976 թվականի ժողովրդատնտեսական պլանը հաջողությամբ կատարելու համար ծավալված սոցիալիստական մրցության մեջ:

«Որակի հնգամյակին՝ բանվորական երաշխիք» նախաձեռնությամբ հանդես են եկել Մոսկվայի ձեռնարկությունների առաջավոր բրիգադներն ու կոլեկտիվները: Լենինգրադում լայն տարածում է գտել «Յուրաքանչյուրի աշխատանքի բարձր որակից դեպի կոլեկտիվի աշխատանքի բարձր արդյունավետություն» նշանաբանով շարժումը: Հետագա կիրառություն է գտնում արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային սիստեմ մշակելու և արմատավորելու Լվովի մարզի ձեռնարկությունների, ինչպես նաև բանվորների, ինժեներատեխնիկական աշխատողների համար խնայողության անձնական հաշիվներ բացելու Սվերդլովսկի մարզի ձեռնարկությունների փորձը: Ընդլայնվում է աշխատանքի ամենաբարձր արտադրողականության համար ածխարդյունաբերության և հանքարդյունաբերության առաջավոր բրիգադների ծավալած մրցությունը: Ալթայի երկրամասի և Ռոստովի մարզի գյուղատնտեսության աշխատողները հանդես են եկել կոլտնտեսային և սովխոզային արտադրության բոլոր ռեզերվների առավելագույն օգտագործման համար, բարձր բերքի համար մրցություն ծավալելու նախաձեռնությամբ: Մի շարք շինարարական և մոնտաժային կազմակերպությունների, մեքենաշինության ձեռնարկությունների կոլեկտիվներ սոցիալիստական մրցություն են ծավալում թեթև ու սննդի արդյունաբերության ձեռնարկությունների կառուցումն արագացնելու, այդ ձեռնարկությունների համար

սարքավորումների պատրաստման ժամկետները կրճատելու և նոր կարողությունները արագորեն յուրացնելու նպատակով:

Պաշտպանելով և հավանություն տալով աշխատավորների ստեղծագործական նախաձեռնությանը, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, ՍՍՀՄ Մինիստրների սովետը, արհեստակցական միությունների համամիութենական կենտրոնական խորհուրդը և ՀամԼԿԵՄ Կենտրոնական կոմիտեն որոշում են.

1. Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, օկրուգկոմներին, քաղկոմներին, շրջկոմներին, կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններին, մինիստրություններին ու գերատեսչություններին, միութենական ու ինքնավար հանրապետությունների մինիստրների սովետներին, աշխատավորների դեպուտատների երկրամասային, մարզային, քաղաքային և շրջանային սովետների գործկոմներին, տնտեսական ղեկավարներին հանձնարարվում է կազմակերպչական և մասսայական-քաղաքական աշխատանքը նպատակամղել «Բարձրացնել արտադրության արդյունավետությունը և աշխատանքի որակը՝ հանուն էկոնոմիկայի և ժողովրդի բարեկեցության հետագա աճի» նշանաբանով համամիութենական սոցիալիստական մրցության լայն ծավալմանը:

Մրցողների ջանքերը կենտրոնացնել հետևյալ հիմնական խնդիրների լուծման վրա.

բարձրացնել յուրաքանչյուր աշխատավորի, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի աշխատանքի արդյունավետությունը և որակը, անշեղորեն բարձրացնել արտադրանքի և շինմոնտաժային աշխատանքների տեխնիկական մակարդակն ու որակը, զգալիորեն ավելացնել բարձրագույն կատեգորիայի արտադրանքի թողարկումը.

ապահովել աշխատանքի արտադրողականության աճի արագ տեմպեր՝ գիտատեխնիկական առաջադիմությունն է՛լ ավելի արագացնելու, աշխատողների որակավորումը և պրոֆեսիոնալ վարպետությունը բարձրացնելու, աշխատանքի, արտադրության և կառավարման կազմակերպումը կատարելագործելու, աշխատաժամանակը լավագույն կերպով օգտագործելու հիման վրա.

ավելի արդյունավետորեն օգտագործել արտադրական ֆոնդերը, բարձրացնել մեքենաների և սարքավորումների հերթափոխայնության գործակիցը, կրճատել նոր գործարկվող կարողությունների յուրացման ժամկետները և հասնել նախագծային տեխնիկա-տնտեսական ցուցանիշներին.

ուժեղացնել խնայողության ռեժիմը, իջեցնել թողարկվող արտադրանքի ինքնարժեքը և նյութատարությունը, ապահովել հոգատար, սրտացավ վերաբերմունքը նյութերի, էներգիայի և մյուս նյութական, ինչպես նաև ֆինանսական ռեսուրսների օգտագործման նկատմամբ.

բարձրացնել գիտական հետազոտությունների արդյունավետությունը, արագացնել դրանց արդյունքների օգտագործումը ժողովրդական տնտեսության մեջ, ստեղծել և արտադրության մեջ արագորեն ներդնել ժամանակակից նյութեր և տեխնոլոգիական պրոցեսներ, նոր մեքենաներ և սարքավորումներ, պակասեցնել դրանց քաշը, բարձրացնել դրանց դիմացկունությունն ու հուսալիությունը.

ավելացնել արտադրանքի թողարկումը՝ պարտադիր կերպով կատարելով սահմանված արտադրացանկի և տեսականու, կոոպերացված մատակարարումների պլանային առաջադրանքները և պայմանագրային պարտավորությունները, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի ձեռնարկություններում ընդլայնել ժողովրդական սպառման բարձրորակ ապրանքների արտադրությունը.

ըստ ամենայնի ավելացնել հացահատիկի, մսի, կաթի, բամբակի, շաքարի ճակնդեղի, բանջարեղենի, կարտոֆիլի և հողագործական ու անասնապահական մյուս մթերքների արտադրությունը, հասնել այն բանին, որ յուրաքանչյուր կոլտնտեսություն և սովխոզ հաջողությամբ կատարի ու գերակատարի պետությանը գյուղատնտեսական մթերքներ վաճառելու պլանները, է՛լ ավելի արդյունավետ օգտագործել հողը, տեխնիկան, պարարտանյութերը.

կրճատել շինարարության ժամկետներն ու արժեքը, ընդլայնել գործող ձեռնարկությունների տեխնիկական վերազինումը և վերակառուցումը, կիրառել շինմոնտաժային աշխատանքների առաջավոր մեթոդներ, բարձրարդյունավետ նյութեր և կոնստրուկցիաներ, կատարելագործել շենքերի և կառուցվածքների նախագծումը.

բարելավել ժողովրդական տնտեսության և բնակչության սպասարկումը տրանսպորտի և կապի բոլոր տեսակներով, բեռները արագորեն հասցնել սպառողներին, կրճատել ծախքերը, ոչ ռացիոնալ փոխադրումները, ավելի լրիվ օգտագործել փոխադրամիջոցները.

բարելավել ոչ արտադրական ոլորտի բոլոր ճյուղերի աշխատանքը, ընդլայնել սպասարկման առաջադիմական ձևեր ու մեթոդներ, բարձրացնել աշխատանքի կուլտուրան:

2. Կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական ու տնտեսական մարմիններին, մինիստրություններին ու գերատեսչություններին հանձնարարվում է՝ ըստ ամենայնի օգտագործել համաժողովրդական սոցիալիստական մրցության կազմակերպման բնագավառում կուտակված փորձը: Անընդհատ կատարելագործել ձեռնարկությունների, արտադրամասերի, հերթափոխությունների, բրիգադների, տեղամասերի, բաժանմունքների, ֆերմաների և օղակների կոլեկտիվների սոցիալիստական մրցությունը, ինչպես նաև բանվորների ու կոլտնտեսականների անհատական մրցությունը և ըստ մասնագիտությունների ծավալվող մրցությունը:

Հատուկ ուշադրություն դարձնել հումք, նյութեր, կոմպլեկտավորման առարկաներ մատակարարող ձեռնարկությունների ու կազմակերպությունների կոլեկտիվների և պատրաստի արտադրանք թողարկող ձեռնարկությունների կոլեկտիվների միջև մրցության ծավալմանը՝ նպատակ ունենալով զգալիորեն բարձրացնել արտադրանքի որակը և հասնել ժողովրդատնտեսական բարձր արդյունքի: Ամրապնդել գիտության և արտադրության աշխատողների ստեղծագործական համագործակցությունը, անհրաժեշտ պայմաններ ապահովել, որպեսզի բոլոր կոլեկտիվները, բանվորներն ու կոլտնտեսականները հաջողությամբ կատարեն ստանձնած սոցիալիստական պարտավորությունները և հանդիպական պլանները: Հասնել սոցիալիստական մրցության գործունության հետագա բարձրացման: Սովետական մարդկանց դաստիարակել աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով, ամրապնդել աշխատանքային և արտադրական կարգապահությունը:

Հաստատակամորեն արմատավորել սոցիալիստական մրցության հաղթողների՝ ճյուղում առավել բարձր ցուցանիշների հասած նորարարների, առաջավոր բանվորների, կոլտնտեսականների և ինժեներա-տեխնիկական աշխատողների աշխատանքի փորձը: Մինիստրություններին ու գերատեսչություններին հանձնարարվում է՝ ուժեղացնել վերահսկողությունը առաջավոր փորձի արմատավորման, ամենամյա պլանների մշակման և կատարման նկատմամբ: 1976 թվականին կազմակերպել այն ձեռնարկությունների, կառույցների, կոլտնտեսությունների, սովխոզների և մյուս կազմակերպությունների փորձի ուսումնասիրումը, որոնք կարժանանան «Իններորդ հնգամյակում քաջարի աշխատանքի համար» ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի հուշանշաններին:

Կուսակցական մարմիններին, ՀԱՄԿԽ-ին, ՀամԼԿԵՄ Կենտկոմին, մինիստրություններին ու գերատեսչություններին հանձնարարվում է՝ անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել է՛լ ավելի բարձրացնելու երիտասարդության աշխատանքային դաստիարակության որակը, զարգացնելու վարպետ-դաստիարակների շարժումը, երիտասարդ բանվորներին ու կոլտնտեսականներին փոխանցելու կադրային աշխատողների փորձը, բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության հերոսական ավանդույթները:

3. 1976 թվականին կազմակերպել.

միութենական և ինքնավար հանրապետությունների, երկրամասերի և մարզերի համամիութենական սոցիալիստական մրցության՝ հաղթողներին հանձնելով ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի ու ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշներ և դիպլոմներ.

քաղաքների և քաղաքային շրջանների համամիութենական սոցիալիստական մրցության՝ հաղթողներին հանձնելով ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի ու ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշներ և դիպլոմներ ու դրամական մրցանակներ.

ազգային օկրուգների և գյուղական շրջանների համամիութենական սոցիալիստական մրցության՝ հաղթողներին հանձնելով ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի ու ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշներ և դիպլոմներ ու դրամական մրցանակներ.

ձեռնարկությունների, միավորումների, կառույցների, գիտահետազոտական և մյուս կազմակերպությունների ու հիմնարկների կոլեկտիվների համամիութենական սոցիալիստական մրցության՝ հաղթողներին հանձնելով ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշներ և դիպլոմներ ու դրամական մրցանակներ.

կոլտնտեսությունների, սովխոզների, ագրոարդյունաբերական միավորումների, միջտնտեսական և մյուս գյուղատնտեսական ձեռնարկությունների ու կազմակերպությունների (անկախ գերատեսչական ենթակայությունից), ինչպես նաև ՍՍՀՄ գյուղատնտեսության մինիստրության սիստեմի գիտահետազոտական հիմնարկների համամիութենական սոցիալիստական մրցության՝ հաղթողներին հանձնելով ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշներ և դիպլոմներ ու դրամական մրցանակներ.

բրիգադների, տեղամասերի, բաժանմունքների, ֆերմաների, օղակների համամիութենական սոցիալիստական մրցության՝ հաղթողներին հանձնելով. արդյունաբերության, շինարարության մեջ և տրանսպորտում՝ մինիստրությունների (գերատեսչությունների) և արհմիությունների կենտկոմների պատվո վիմպելներ, իսկ վիմպելներով պարգևատրված բրիգադների (տեղամասերի) անդամներին՝ պատվո դիպլոմներ և հուշանվերներ, գյուղատնտեսության մեջ՝ մինիստրությունների (գերատեսչությունների) և արհմիությունների կենտկոմների պատվո դիպլոմներ և հուշանվերներ.

կոմերիտական-երիտասարդական բրիգադների համամիութենական սոցիալիստական մրցության՝ հաղթողներին հանձնելով «Հնգամյակների հերոսները, աշխատանքի վետերանները՝ լավագույն կոմերիտական երիտասարդական կոլեկտիվին» փոխանցիկ կարմիր դրոշներ՝ դիպլոմներով և դրամական մրցանակներով.

առաջատար մասնագիտությունների բանվորների և կոլտնտեսականների համամիութենական սոցիալիստական մրցության՝ հաղթողներին հանձնելով մինիստրությունների (գերատեսչությունների) և արհմիությունների կենտկոմների պատվո դիպլոմներ և հուշանվերներ։

4. Սոցիալիստական մրցության մեջ արտադրական բարձր ցուցանիշների հասած բանվորներին, կոլտնտեսականներին, ինժեներա-տեխնիկական աշխատողներին պարգևատրելու համար հիմնել «Սոցիալիստական մրցության հաղթող» միասնական ընդհանուր միութենական կրծքանշան։

Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, մինիստրություններին ու գերատեսչություններին, միութենական ու ինքնավար հանրապետությունների մինիստրների սովետներին, երկրգործկոմներին և մարզգործկոմներին թույլատրել արհմիութենական և կոմերիտական մարմինների հետ համատեղ կառավարման պարգևների ներկայացնել.

արտադրության առավել աչքի ընկած առաջավորներին, բրիգադների, տեղամասերի, բաժանմունքների, ֆերմաների, օղակների անդամներին՝ ճյուղում աշխատանքի արտադրողականության ու արտադրանքի որակի առավել բարձր մակարդակի հասնելու և աշխատանքում ակնառու այլ արդյունքներ ձեռք բերելու համար.

այն լավագույն ձեռնարկություններին, կառույցներին, կոլտնտեսություններին, սովխոզներին և մյուս կազմակերպություններին, որոնք առանձնապես խոշոր հաջողությունների են հասել արտադրության արդյունավետությունն ու



արտադրանքի որակը բարձրացնելու, պլանային առաջադրանքները կատարելու գործում։

Աշխատանքում ձեռք բերած ակնառու նվաճումների համար ՍՍՀՄ պետական մրցանակներ շնորհել սոցիալիստական մրցության առաջավորներին՝ բանվորների, կոլտնտեսականների, ինժեներա-տեխնիկական աշխատողների, բրիգադների, տեղամասերի, բաժանմունքների, ֆերմաների և օղակների կոլեկտիվների։

5. Ընդունել.

ա) ՀԱՄԿԽ-ի այն առաջարկությունը, որ արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության առաջավորներին խրախուսելու համար առանձնացվեն Սովետական Միությունում շրջագայելու և եղբայրական սոցիալիստական երկրներ մեկնելու 100 հազար արտոնյալ տուրիստական ուղեգրեր.

բ) ՀամԼԿԵՄ Կենտկոմի այն առաջարկությունները, որ լենինյան կոմերիտմիության մրցանակներ շնորհվեն սոցիալիստական մրցության մեջ առավել բարձր արդյունքների հասած կոմերիտական-երիտասարդական կոլեկտիվներին և արտադրության երիտասարդ աշխատողներին.

ՀամԼԿԵՄ Կենտկոմի վիմպելներ հիմնվեն սոցիալիստական մրցության մեջ լավագույն ցուցանիշների հասած կոմերիտական-երիտասարդական կոլեկտիվներին պարգևատրելու համար.

սոցիալիստական մրցության հաղթողների համար հատկացվեն սովետական ժողովրդի հեղափոխական, մարտական ու աշխատանքային փառքի վայրերով շրջագայելու և եղբայրական սոցիալիստական երկրներ մեկնելու 30 հազար արտոնյալ տուրիստական ուղեգրեր։

6. Կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպություններին հանձնարարվում է պրոպագանդայի, բանավոր և դիտողական ագիտացիայի բոլոր միջոցները, տնտեսագիտական կրթության սիստեմը օգտագործել արտադրության արդյունավետությունն ու աշխատանքի որակը բարձրացնելու, պլանային առաջադրանքները կատարելու համար մրցության ծավալման և նրա գործունեության բարձրացման նպատակով, մրցության արդյունքների հրապարակայնության ապահովման և առաջավոր փորձի տարածման նպատակով։

Կենտրոնական և տեղական թերթերի, հանդեսների և հրատարակչությունների խմբագրություններին, ՍՍՀՄ Մինիստրների սովետի հեռուստատեսության և ռադիոհաղորդումների պետական կոմիտեին, ՍՍՀՄ Մինիստրների սովետի կինեմատոգրաֆիայի պետական կոմիտեին հանձնարարվում է՝ սիստեմատիկաբար և լայնորեն լուսաբանել համամիութենական սոցիալիստական մրցության ընթացքը, կոնկրետ օրինակներով համակողմանիորեն բացահայտել մրցության դաստիարակիչ դերը, ցույց տալ լավագույն արտադրական փորձը, վճռականապես հանդես գալ մրցության մեջ տեղ գտած թերությունների ու ձևականության դեմ։

Կենտրոնական և տեղական թերթերում շարունակել հատուկ էջեր նվիրել համամիութենական սոցիալիստական մրցության ընթացքին և արդյունքներին։ Կանոնավոր կերպով հաղորդել «Սոցիալիստական մրցության օրագիր» ռադիոծրագրեր ու հեռուստածրագրեր։

***

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, ՍՍՀՄ Մինիստրների սովետը, ՀԱՄԿԽ-ն և ՀամԼԿԵՄ Կենտկոմը հաստատ վստահություն են հայտնում, որ երկրի աշխատավորները, ակտիվորեն ներգրավվելով համամիութենական սոցիալիստական մրցության մեջ, աշխատանքային նոր նվաճումներով կդիմավորեն Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXV համագումարը, կբարձրացնեն արտադրության արդյունավետությունն ու աշխատանքի որակը, հաջողությամբ կկատարեն 1976 թվականի ժողովրդատնտեսական պլանը և, դրանով իսկ, արժանի ավանդ կներդնեն տասներորդ հնգամյակի վեհ խնդիրների իրականացման գործում։

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

# ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ԽԹԱՆԻՉ Է

**Ա. Պ. ՄԵԼՔՈՆՅԱՆ**
ՀԿԿ Երևանի կազմակերպության 26 կոմիսարների անվան շրջկոմի առաջին քարտուղար

ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ քաղաքական ու աշխատանքային աննախադեպ վերելք է առաջացրել Երևանի 26 կոմիսարների անվան շրջանի աշխատավորական կոլեկտիվներում, մեր մարդկանց համակել անսահման խանդավառությամբ։ Լայնորեն ընդգրկվելով համագումարի պատվին ծավալված համաժողովրդական սոցիալիստական մրցության մեջ, աշխատավորական կոլեկտիվները արժանավայել նվերներով են դիմավորում հարազատ կուսակցության այդ մեծ համաժողովը, որը վիթխարի կարևորության իրադարձություն է կուսակցության և սովետական ժողովրդի կյանքում։

Մեր մարդիկ խորապես համոզված են, որ համագումարը կմշակի երկրի տնտեսական հզորացման և ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման մեծ ծրագիրը, որի իրականացումը խոշոր առաջընթաց քայլ կլինի կոմունիզմի կառուցման ճանապարհին։

Միանգամայն օրինաչափ է, որ նախահամագումարյան օրերին կուսկազմակերպությունների և աշխատավորական կոլեկտիվների ուշադրությունը սևեռված էր ՍՄԿԿ Կենտկոմի՝ համագումարին ներկայացվող նախագծի վրա։ Քաղաքական ակտիվության պայմաններում քննարկելով մեր երկրի տնտեսական վերելքի, բնակչության կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման համար կենսական նշանակություն ունեցող այդ պատմական փաստաթուղթը՝ նրանք ջերմորեն հավանություն են տալիս կուսակցության տնտեսական քաղաքականությանը, իրենց պատրաստակամությունը հայտնում՝ այն հետևողականորեն կենսագործելու, նոր՝ տասներորդ հնգամյակում էկոնոմիկայի բուռն վերելք ապահովելու համար։

«ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագծի քննարկմանը նվիրված ժողովներում միաժամանակ հանրագումարի էին բերվում անցած՝ իններորդ հնգամյակում կոլեկտիվների և կուսկազմակերպությունների ծավալած գործունեության արդյունքները, նախանշվում տասներորդ հնգամյակի խնդիրները։ Աշխատավորներն արծարծում էին շրջանի հետագա առաջընթացի հեռանկարային պրոբլեմները, հանրային արտադրության արդյունավետության, աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի որակի բարելավման, նոր հնարավորությունների ու ռեզերվների հայտաբերման ու օգտագործման հարցերը, արժեքավորում դրանց լուծման գործում սոցիալիստական մրցության հսկայական խթանիչ դերը։

Հայաստանի կոմկուսի XXVI համագումարը հանրագումարի բերեց իններորդ հնգամյակում հանրապետության կուսկազմակերպության ծավալած գործունեության կոնկրետ արդյունքները, ընդհանրացրեց մեր ձեռքբերումների դրական փորձը, բացահայտեց ժողտնտեսության տարբեր բնագավառներում տեղ գտած թերությունները։ Համագումարը պատշաճ կերպով արծարծեց նաև սոցմրցության հարցերը։ «Վերլուծելով աշխատանքի արդյունքները,— ասաց ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Դեմիրճյանը համագումարին տված հաշվետու զեկուցման մեջ,— կարելի է ամենայն որոշակիությամբ ասել, որ հաջողությունն ուղեկցել է նախ և առաջ այն կազմակերպություններին, ուր մրցության դաստիարակչական պոտենցիալի աճն առնչվել է, ամբողջությամբ վերցրած, նրա մակարդակի և թափի բարձրացման հետ, այդ համաժողովրդական շարժման ղեկավարման նկատմամբ գիտական մոտեցման հետ, արդյունքների հրապարակայնության, համադրելիության, փորձի կրկնման հնարավորության լենինյան սկզբունքների ստեղծագործական կիրառման հետ»։

Կուսշրջկոմը սոցիալիստական պարտավորությունների կատարման արդյունքները քննարկել է ո՛չ միայն շրջանի, այլև առանձին ձեռնարկությունների մասշտաբով։ Դա օգնում է մեզ՝ ավելի խորությամբ ուսումնասիրել մրցության կազմակերպման վիճակը ներքին օղակներում, կանխել այդ գործում եղած թերությունները, բարելավել սոցմրցության կուսակցական ղեկավարումը, մասսայական-քաղաքական աշխատանքի զանազան ձևերով ու մեթոդներով զարգացնել աշխատավորների ստեղծագործական նախաձեռնությունը։

Մեր շրջանում մրցության կազմակերպման մեջ նոր է այն, որ ստանձնած սոցպարտավորությունների կատարման արդյունքներն ամեն ամիս ամփոփվում են դիրեկտորների խորհրդի նիստում։ Պլանային առաջադրանքները և սոցպարտավորությունները թերակատարող ձեռնարկությունների հարցը խորհուրդը ներկայացնում է կուսշրջկոմի բյուրոյի քննարկմանը։

Սոցմրցության լավագույն, պրակտիկայում քննություն բռնած ձև է բարեկամական մրցությունը համասեռ ձեռնարկությունների միջև։ Այսպես, մեր «Երազ»-ի կոլեկտիվը մրցում է Լվովի և Ռիգայի ավտոբուսային գործարանների կոլեկտիվների, ալյումինի գործարանը՝ Սումգայիթի ալյումինի գործարանի կոլեկտիվի հետ և այլն։ Սակայն բարեկամական մրցության շրջանակներն ավելի լայն են։ Դրա վկայությունը մեր շրջանի և Թբիլիսիի ու Բաքվի 26 կոմիսարների անվան, ինչպես նաև Ռոստովի Պրոլետարական շրջանների միջև եղած և արդեն ավանդույթ դարձած արդյունավետ մրցությունն է։ Մենք միմյանց հաղորդում ենք առաջավոր փորձը, ցույց տալիս տեխնիկա-տնտեսական անհրաժեշտ աջակցություն։

Մրցությունը մարդկանց աշխատանքային ստեղծագործական ուժերի դրսևորման, նախաձեռնության զարգացման ու ակտիվության բարձրացման կարևոր միջոց է։ Դրա վկայությունն անցած հնգամյակի տարիներին ծավալված մրցության ընթացքում շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների ու կառույցների կոլեկտիվներում ծնունդ առած հայրենասիրական բազմաթիվ նախաձեռնություններն են։ Դրանք, անտարակույս, մրցության բարձրագույն ձևի, աշխատանքի նկատմամբ կոմունիստական, գիտակցական վերաբերմունքի դրսևորման ցայտուն օրինակներ են։ Տակավին հնգամյակի սկզբներին լայն շարժում ծավալվեց հնգամյակը չորս, չորսուկես տարում ավարտելու և կոմունիստականի կոչման արժանանալու համար։ Այդ մրցությունն առավել արդյունավետ էր էլեկտրալամպերի գործարանում։ Այստեղ հնգամյակի եզրափակիչ տարում 22 բրիգադա աշխատում էր տասներորդ հնգամյակի հաշվին, ութ բրիգադա դարձավ համամիութենական սոցմրցության հաղթող, 316 բանվորներ արժանացան իններորդ հնգամյակի հարվածայինի կոչման, իսկ 415 բանվորներ ներկայացվեցին «1975 թվականի սոցիալիստական մրցության հաղթող» կրծքանշանով պարգևատրման։

Կուսշրջկոմը պաշտպանում է արտադրական կոլեկտիվներում ծնունդ առած ամեն մի նախաձեռնություն։ Անցած տարի, օրինակ, ուսումնասիրեցինք և բյուրոյի նիստում քննարկեցինք Քանաքեռի ալյումինի գործարանի բանվոր, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Պ. Նազարեթյանի ղեկավարած բրիգադայի «Միայն տնտեսած հումքի և էլեկտրաէներգիայի հաշվին արտապլանային արտադրանք տալու համար» և էլեկտրալամպերի գործարանի բանվոր Պ. Քալաշյանի ղեկավարած բրիգադայի «Գերազանց որակի պայմաննե-

ծավալը, շահագործման հանձնել 18 հազար ՃՄ մակերեսով արտադրական մասնաշենք, որը հնարավորություն կընձեռի սարքավորումներ արտադրել չորրորդ սերնդի էլեկտրոնային հաշվիչ մեքենաների սերիական թողարկման համար։ Կընդարձակվեն և իրենց գործունեության շրջանակները կմեծացնեն գիտական մյուս հիմնարկությունները։

Մեր շրջանի էկոնոմիկայում ծանրակշիռ տեղ ունեն գունավոր մետալուրգիայի, էլեկտրատեխնիկական, սարքաշինական, հաստոցաշինական և ավտոմոբիլաշինական ձեռնարկությունները, որոնք տալիս են շրջանի արդյունաբերության ամբողջ արտադրանքի 76 տոկոսը։ Դրանց համախառն արտադրանքը իններորդ հնգամյակում աճել է 48 տոկոսով։ Մեծ աճ է նախատեսվում նաև տասներորդ հնգամյակում։ Եվ օրինաչափ է, որ, քննարկելով «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագիծը, ալյումինի, էլեկտրալամպերի, լուսատեխնիկական, ավտոմոբիլային գործարանների և մյուս ձեռնարկությունների կոլեկտիվներն ու կուսկազմակերպությունները արծարծում են արտադրության վերելքն ապահովող խնդիրները, դրանք սերտորեն շաղկապում ՍՄԿԿ Կենտկոմի նախագծում առաջադրված պրոբլեմների հետ։ Այսպես, նախագծով պահանջվում է ալյումինի արտադրությունը տասներորդ հնգամյակում ավելացնել 1,2—1,3 անգամ, շարունակել գունավոր մետալուրգիայի ձեռնարկությունների վերակառուցումն ու տեխնիկական զինումը։ Կուսակցության այս պահանջի իրականացումը ալյումինի գործարանի մարդիկ համարում են իրենց առաջնահերթ խնդիրը։ «Հայաստանի ժողովրդական տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի հայտնի որոշմամբ նախատեսվում է տասներորդ հնգամյակում ընդլայնել ալյումինի գործարանի փոլգագլանման արտադրությունը։ Միջոցներ են տրամադրվել գազի և փոշու արտանետումը մինչև թույլատրելի սահմանը նվազեցնելու համար։ Եվ երբ գործարանի կուսժողովը քննարկում էր ՍՄԿԿ Կենտկոմի 1975 թ. դեկտեմբերյան պլենումի արդյունքներն ու Կենտկոմի նախագիծը, կոմունիստներ Գ. Թոքմաջյանը, Ա. Մելքոնյանը և ուրիշներ հանդես եկան վերակառուցման աշխատանքների արագացմանը նպաստող առաջարկներով։

ՍՄԿԿ Կենտկոմի նախագծով խնդիր է դրվում 1980 թվականին ապահովել 2,1—2,2 միլիոն ավտոմոբիլի թողարկումը, զգալիորեն բարձրացնել ավտոմոբիլների տեխնիկական մակարդակը, որակական և շահագործական ցուցանիշները։ Անտարակույս, այս խնդրի լուծման գործում իր համեստ ներդրումն է ունենալու նաև Երևանի ավտոգործարանի կոլեկտիվը։ Այստեղ ձեռնարկվել են վերակառուցման ու արտադրության ընդլայնման աշխատանքներ, որոնք կավարտվեն 1977 թվականին։ ՍՄԿԿ Կենտկոմի 1975 թվականի դեկտեմբերյան պլենումի արդյունքների քննարկմանը նվիրված կուսակցական ժողովում կոմունիստները «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագծի առնչությամբ անդրադարձան նաև իրենց ձեռնարկության հետագա վերելքի հարցերին, նշեցին դրանց լուծման ուղիները, արեցին արտադրության արդյունավետության բարձրացման, արտադրանքի որակի բարելավման շահերից բխող առաջարկություններ։ Արտադրության պետի տեղակալ Վլ. Մելքոնյանը, ներկող բանվոր Ռ. Հակոբյանը, դրոշման արտադրամասի կուսբյուրոյի քարտուղար Գ. Գասպարյանը, կոնստրուկտորական բյուրոյի պետ Հ. Նալբանդյանն առաջարկեցին արագացնել վերակառուցման աշխատանքները, ներդնել որակի կառավարման համակարգ, արագացնել «Երազ» 37—30 ավտոմեքենայի արտադրության յուրացումը, ապահովել համաչափ աշխատանքը, ուժեղացնել պայքարը որակի բարելավման համար, սահմանել ներգործարանային որակի նշան։ Ժողովականները որոշեցին գործարար սոցմրցություն ծավալել ի պատիվ ՍՄԿԿ XXV համագումարի, խնդրել վերադաս մարմիններին՝ գործարանի վերակառուցման ու արտադրության ընդլայնման հարցը մտցնել տասներորդ հնգամյակի ժողովրդատնտեսական պլանի մեջ։



Նոր հնգամյակում առաջընթացի լայն հեռանկարներ են բացվել նաև շրջանի մյուս առաջատար ձեռնարկությունների առջև։ Այդ հեռանկարները նախանշվել են «Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշմամբ։ Արտադրական հզորությունների մեծացման լայն աշխատանքներ կծավալվեն ռելեի, ժամացույցի գործարաններում, արտադրության ծավալը կաճի նաև մյուս ձեռնարկություններում։

Շրջանի կուսակցական-տնտեսական ակտիվի ժողովը, ի մի բերելով իններորդ հնգամյակի, մասնավորապես 1975 թ. մեր ձեռքբերումները, շրջանի աշխատավորության ուշադրությունը բևեռեց «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագծից բխող նոր խնդիրների վրա։ Ժողովի մասնակիցները, ջերմորեն հավանություն տալով Կենտկոմի նախագծին, շրջանի աշխատավորության անունից ստանձնեցին նոր պարտավորություններ և խոստացան աշխատանքային հաղթարշավը շարունակել նաև տասներորդ հնգամյակում, իրենց արժանի ավանդը ներդնել մեր հայրենիքի բարգավաճման գործում։ Արդյունաբերության բնագավառի աշխատողները պարտավորվեցին արտադրության ինտենսիվ զարգացման, գիտատեխնիկական նվաճումների ներդրման, աշխատանքի, արտադրության ու կառավարման կազմակերպման առաջավոր մեթոդների արմատավորման, արտադրական կարողությունների և նյութական ռեսուրսների լիարժեք օգտագործման, որակի բարելավման շնորհիվ արտադրանքի իրացման, կարևորագույն արտադրատեսակների արտադրության 1976 թվականի առաջադրանքը կատարել ժամկետից 6 օր շուտ, պլանից ավելի թողարկել 16 միլիոն ռուբլու արտադրանք։ Որոշվեց արդյունաբերական արտադրանքի ծավալի ոչ պակաս քան 80 տոկոսը ապահովել աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին, ինքնարժեքի իջեցման միջոցով տնտեսել 25 միլիոն ռուբլի։

Ընդունված պարտավորություններում հատկապես լուրջ տեղ է հատկացված թողարկվող արտադրանքի որակին։ 18 արտադրատեսակներ կներկայացվեն պետական որականիշի, ընթացիկ տարվա առաջին եռամսյակում արտադրությունից կհանվեն թողարկվող երկրորդ կատեգորիայի արտադրատեսակները։

Շրջանի աշխատավորները որոշել են, լայն թափ հաղորդելով կուսակցության XXV համագումարի պատվին ծավալված սոցիալիստական մրցությանը, յուրացնել 105 նոր արտադրատեսակների արտադրություն, ավելի ակտիվացնել նորարարական ու գյուտարարական շարժումը, աշխատանքի գիտական կազմակերպումը բարձրացնել նոր մակարդակի։

ՍՄԿԿ XXV համագումարի տարին սոցիալիստական մրցության մեջ ձեռք բերած նորանոր հաջողություններով են որոշել նշանավորել շրջանի շինարարները։ Նրանք խոստացել են հնգամյակի առաջին տարվա շինմոնտաժային աշխատանքների պլանը կատարել ժամկետից 3 օր շուտ, «գերազանց» և «լավ» գնահատականներով շահագործման հանձնել արդյունաբերական ու կուլտուր-կենցաղային մի շարք օբյեկտներ։

Շրջանի աշխատավորության ստանձնած սոցիալիստական բարձր պարտավորություններն անթերի կատարելու համար կուսակցության շրջանային կոմիտեն ու սկզբնական կուսկազմակերպությունները կազմակերպական, գաղափարա-դաստիարակչական աշխատանքն ուղղել են սոցիալիստական մրցության է՛լ ավելի զարգացմանը, նրա արդյունավետության բարձրացմանը։ Մենք մրցությունը դիտում ենք որպես մարդկանց ստեղծագործական ակտիվության զարգացման, նրանց ուժերի ու կարողությունների խթանման հզոր միջոց։ Սոցիալիստական մրցության կազմակերպման մեր ելակետը «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագծի այն պահանջն է, թե անհրաժեշտ է ամեն ինչ անել, որպեսզի տասներորդ հնգամյակը դառնա արդյունավետության հնգամյակ, որակի հնգամյակ՝ հանուն ժողովրդի բարեկեցության հետագա աճի։

# ՄԱՐՔՍԻՍՏԱԿԱՆ ՏՆՏԵՍԱԳԻՏՈՒԹՅԱՆ ՍՊԵՑԻՖԻԿՅԱՆ ԽԵՂԱԹՅՈՒՐՈՒՄՆԵՐԻ ԴԵՄ

## (ՍԱՐԳԻՍ ԿԱՍՅԱՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

ՄԱՐՔՍԻԶՄԸ ՀԱՅ ԻՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԵՋ հասարակական-քաղաքական մտքի հոսանք է դարձել հակաբանվորական, մանրբուրժուական և բուրժուական տարբեր գաղափարախոսությունների դեմ մղվող անհաշտ պայքարում: Հաղթահարելով ցարիզմի օրոք բանավոր ու գրավոր խոսքի սահմանափակումները՝ հայ մարքսիստ-լենինյանները բացահայտել են մարքսիստական ուսմունքի խեղաթյուրումները և ծավալել աշխատավորներին հեղափոխական մարքսիզմի ոգով դաստիարակելու գործը: Անդրկովկասում մարքսիզմի տարածման, մարքսիզմն իր գաղափարական հակառակորդների հարձակումներից ու խեղաթյուրումներից պաշտպանելու մարզում, մյուս նշանավոր հայ լենինյանների հետ մեկտեղ, մեծ ավանդ է մուծել կոմունիստական կուսակցության հնագույն ևականավոր գործիչ Սարգիս Կասյանը:



Սարգիս Հովհաննեսի Տեր-Կասպարյանը (Կասյան) ծնվել է 1876 թվականի հունվարի 28-ին, Շուշիում: Ավարտել է Բաքվի ռեալական ուսումնարանը, ապա՝ Լայպցիգի առևտրական ինստիտուտն ու Բեռլինի համալսարանի փիլիսոփայության ֆակուլտետը: 90-ական թվականների վերջերից նա ակտիվ մասնակցել է բանվորական հեղափոխական շարժմանը, 1905 թվականից անդամագրվել բոլշևիկյան կուսակցությանը: Հատկապես մեծ է նրա վաստակը հայ բոլշևիկյան պարբերական մամուլի ստեղծման, հայ-մարքսիստական հրապարակախոսության ձևավորման ու զարգացման գործում: 1906 թվականին Կասյանի նախաձեռնությամբ ու խմբագրությամբ լույս է տեսնում բոլշևիկյան հնագույն հայերեն լրագրերից մեկը՝ «Բանվորի ձայնը»: 1906—1907 թթ. Ստ. Շահումյանի և Ս. Սպանդարյանի հետ նա խմբագրել է «Կայծ», «Նոր խոսք» և «Օրեր» բոլշևիկյան թերթերը: 1914 թ. նրա խմբագրությամբ լույս է տեսել «Մեր խոսքը» մարքսիստական շաբաթաթերթը: 1917—1918 թթ. Կասյանը եռանդով աշխատակցել է «Кавказский рабочий», «Бакинский рабочий», «Սոցիալ-դեմոկրատ», «Բանվորի խոսք», «Волна» բոլշևիկյան թերթերին, խմբագրել «Բանվորի կռիվը» և «Բանվոր» լրագրերը: Հայաստանում սովետական իշխանության համար մղված պայքարի ժամանակաշրջանում բացառիկ կարևոր դեր խաղաց նրա Ո՞ւր է ելքը ծրագրային-քաղաքական երկը, որ գրել էր նա բոլշևիկների՝ 1919 թ. սեպտեմբերյան խորհրդակցության հանձնարարությամբ: 1917—1920 թթ. նա եղել է մեր կուսակցության Կովկասյան երկրային կոմիտեի անդամ և դրա քարտուղարը, իսկ 1919—1920 թթ. ՌԿ(բ)Կ Հայաստանի կոմիտեի (Արմենկոմի) նախագահն էր:

Կասյանը խոշոր դեր է խաղացել Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմակերպական ձևավորման լենինյան սկզբունքների իրականացման, հայ ժողովրդի ազատագրության, Հայաստանում սովետական իշխանության հաստատման վերաբերյալ լենինյան ստրատեգիական և տակտիկական խնդիրների լուծման գործում: 1920 թ. նոյեմբերի 29-ի պատմական պահից մինչև հանրապետության ժողկոմխորհի կազմավորումը Հայաստանի հեղափոխական կոմիտեի նախագահն էր Կասյանը: Նրա գրչին է պատկանում ՀԿ(բ)Կ Կենտկոմի և հեղկոմի հանձնարարությամբ գրած այն նշանավոր մանիֆեստը, որով Հայաստանը բանվորների ու գյուղացիների հաղթական ապստամբության շնորհիվ հռչակվեց Սովետական Սոցիալիստական Հանրապետություն:

Կասյանը մարքսիզմ-լենինիզմի ականավոր պրոպագանդիստ էր: Անդրկովկասյան իրականության մեջ նա հետևողականորեն հանդես էր գալիս մարքսիզմի բուրժուական և բուրժուանացիոնալիստական խեղաթյուրումների դեմ, աշխատավորների շրջանում լայնորեն տարածում պրոլետարական հեղափոխական ուսմունքը:

Ստորև լուսաբանվում և վերլուծվում են սոցիալ-դեմոկրատական բանվորական հայ կազմակերպության՝ սպեցիֆիկների, լիդերներից մեկի՝ Բ. Իշխանյանի Տնտեսական զարգացման ֆազերը գրվածքի դեմ Ս. Կասյանի աշխատությունները (1906 և 1908 թթ.), որոնք չեն զետեղվել նրա 1967 թ. լույս տեսած Ընտիր երկերում և դեռևս պատշաճ ուշադրության չեն արժանացել հայ մարքսիստական մտքի պատմությանը նվիրված ուսումնասիրություններում:

***

1890-ական թվականներին, և հատկապես դարասկզբի հայ մամուլի տարբեր օրգաններում, հաճախակի էին շոշափվում հասարակական առաջընթացի հարցերը: Գաղափարական-տեսական տարբեր դիրքերից փորձում էին բնութագրել հասարակական ֆորմացիաները, դասակարգերը, վերլուծել տնտեսական զարգացման փուլերը: Հայ առաջին մարքսիստ հեղափոխականներն ու բոլշևիկ հրապարակախոսները մարքսիզմի դիրքերից լուսաբանում էին այդ հարցերը, միաժամանակ բացահայտում մարքսիզմի ազգայնական, մանրբուրժուական ու բուրժուական խեղաթյուրումները: Այդ ժամանակաշրջանում, հեղափոխական վերելքին զուգընթաց, հայ իրականության մեջ ևս հակաբանվորական տարբեր հոսանքներում տարածվում էին մարքսիզմով զունազարդվելու միտումները: Այդ տարիներին մեր իրականության մեջ ամենահավակնոտ «մարքսիստը», թերևս, Բախշի Իշխանյանն էր՝ սոցիալ-դեմոկրատական բանվորական հայ կազմակերպության (սպեցիֆիկների) պարագլուխներից մեկը:

Իննսունական թվականների երկրորդ կեսից նա հանդես էր գալիս մամուլում մարքսիստական գրականության և մարքսիզմի տեսության ու պատմության տարբեր հարցերին նվիրված հոդվածներով: Մասնավորապես վաղ շրջանում, երբ դեռևս սակավ էր մարքսիզմին վերաբերող հայերեն գրականությունը, նրա առանձին հոդվածներ, ավելի ճիշտ՝ այդ հոդվածների առանձին փաստական նյութեր օբյեկտիվորեն կարող էին օգնել ընթերցողներին՝ ծանոթանալու մարքսիզմի հետ: Այդուհանդերձ, Բ. Իշխանյանը երբեք, բառիս բուն իմաստով, հետևողական մարքսիստ չի եղել, ճշգրիտ ու խորությամբ չի ըմբռնել Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի ուսմունքը: Նրա հրապարակումները, ըստ էության, մարքսիստական տեսության աղավաղումն ու խեղաթյուրումն են:

Հայ մարքսիստ-լենինյանները մշտապես քննադատել են Բ. Իշխանյանի հրապարակումները: Այդ իմաստով հատկապես կարևոր դեր են խաղացել Ս. Կասյանի Գողության, տգիտության և տհասության արդյունք. Թերուս գրական ասպարեզում և գիտության մեջ հոդվածները, որոնցով հեղինակը քննադատում է Բ. Իշխանյանի Տնտեսական զարգացման ֆազերը բրոշյուրը: Իշխանյանն սկզբում այն հրապարակել էր «Մուրճ» ամսագրի մի քանի համարներում[1], ապա՝ առանձին գրքույկով[2]: Հոդվածաշարը կամ բրոշյուրը, ըստ էության, զուրկ էր ստեղծագործական ինքնուրույնությունից, մի կողմից՝ ընդարձակ արտագրությունների շարան էր այն, մյուս կողմից՝ մարքսիզմի բացարձակ աղավաղում և գռեհկացում: Ընթերցողներին թյուրիմացությունից զերծ պահելու և Բ. Իշխանյանի հայացքների իրական արժեքը վերհանելու նպատակով Ս. Կասյանը հանգամանորեն ուսումնասիրում է դրա աղբյուրները, բացահայտում արտագրություններն ու մարքսիստական մտքերի աղճատումները: Հայկական բոլշևիկյան թերթերի փակման պատճառով Ս. Կասյանն ստիպված էր իր առաջին ուսումնասիրությունը զետեղել մենշևիկյան «Հոսանք»

---

[1] *Տե՛ս «Մուրճ», № № 9, 10, 11, 12— 1905 թ.:*

[2] *Բ. Իշխանյան*, Տնտեսական զարգացման ֆազերը. *Թիֆլիս, 1906 թ.:*

լրագրում, ընթերցողներին նախապես հայտնի դարձնելով, որ ինքը թերթի ընդհանուր քաղաքական ուղղությանը համակիր չէ[3]:

Ի պատասխան Ս. Կասյանի հոդվածաշարի, Բ. Իշխանյանը հանդես է գալիս մամուլում և փորձում արդարանալ՝ հեղինակին «խոցելով» իր թունոտ նետերով: Ս. Կասյանը գրում է նոր ուսումնասիրություն և, եթե առաջինում բացահայտում էր հեղինակի սոսկ գրագողությունն ու մարքսիստական աղբյուրների խեղաթյուրումները, ապա այստեղ հանգամանորեն քննադատում է Բ. Իշխանյանի գրվածքի նաև գաղափարական ու տեսական «արժանիքները»: Արդյունքը՝ Թերուսը գրական ասպարեզում և գիտության մեջ[4] հոդվածը, բոլշևիկյան հայերեն լրագիր չլինելու պատճառով, հրապարակում է «Վտակ» թերթում, որի խմբագրությունը գրում է, թե հոդվածի համար պատասխանատու չէ: Կասյանի այդ երկու հոդվածները լրացնում են միմյանց և հանդիսանում Բ. Իշխանյանի գրական և տեսական աղճատումների ամբողջական քննադատությունը:

Իշխանյանն իրեն հռչակում էր մարքսիստ-տնտեսագետ: Նրա գրվածքն էլ, ինչպես այդ երևում է հենց Տնտեսական զարգացման ֆազերը վերնագրից, պետք է բովանդակեր հարցերի տնտեսագիտական վերլուծություն: Բայց, եթե Բ. Իշխանյանը, իրավամբ նշելով այդ ժամանակներում տնտեսագիտական հայերեն գրքերի ու բրոշյուրների սակավությունը, իր գրվածքով թյուրիմացություն հարուցեց տնտեսագիտության բազմաթիվ կարևոր հարցերում, ապա Ս. Կասյանը, քննադատաբար վերլուծելով նրա այդ գրվածքը, հրապարակի վրա դրեց հայերեն առաջին հետևողական մարքսիստական տնտեսագիտական ծավալուն ուսումնասիրությունը:

Կասյանը նկատեց, որ Իշխանյանը հայ գրական շուկայում մարքսիստական տնտեսագիտական երկերի սակավությունը վերացնելու հավակնությամբ, արջի ծառայություն է մատուցում, «ընթերցողի մտքին օգուտ տալու փոխարեն... կերակրելով նրան թերուս մտքի փժվածքներով, սխալ ու անգիտակ տեղեկություններով, գողացված ու հակասական մտքերով ու անիմաստ ու փքուն բառակույտերով»: Ս. Կասյանը հիշատակում է երկու աշխատություն, որոնցից առատորեն արտագրություններ է կատարել Բ. Իշխանյանը: Մեկը Կ. Բյուխերի Ժողովրդական տնտեսության ծագումը գիրքն է, մյուսը՝ Կ. Կաուցկու Էրֆուրտի ծրագիրը: Այդ երկու աշխատություններն էլ Ս. Կասյանը կարդացել էր գերմաներեն, համեմատությունների միջոցով բացահայտել Բ. Իշխանյանի արտագրությունները, աղճատումները: Ս. Կասյանը միաժամանակ ցույց է տալիս, որ Բ. Իշխանյանն ինքը չի կարդացել Կ. Բյուխերի և Կ. Կաուցկու հիշատակված երկերը, այլ քաղվածքները կատարել է երրորդական աղբյուրներից: Այս անբարեխղճության արդյունքը եղել է այն, որ չըմբռնելով իր իսկ վկայակոչած բուրժուական տնտեսագետներ Շմոլերի, Շենբերգի, Լիստի և այլոց հայացքները, նա կատարել է գռեհիկ սխալներ: Այսպես, օրինակ, Ս. Կասյանը ցույց է տալիս, որ Բ. Իշխանյանը չգիտե, որ Շենբերգը չի ընդունում ժողովրդական տնտեսության պատմությունն ըստ փուլերի բաժանելու Լիստի թեորիան, որ նա աղավաղում է Ռոտբերտուսի հայացքները հասարակական աշխատանքի բաժանման տարբեր ժամանակաշրջանների վերաբերյալ և այլն:

Կասյանը հատկապես անդրադառնում է Բ. Իշխանյանի այն հայտարարությանը, թե իր տեսակետը լինելու է «զուտ մատերիալիստական (մարքսիստական)»: Ազդարարելով այդպես, նկատում է Կասյանը, Բ. Իշխանյանը գրվածքի մյուս էջում խոստանում է, որ իր «ուղեցույցը լինելու է բացառապես Կ. Բյուխերի (Լայպցիգի համալսարանում) թեորիան», որը, ըստ Բ. Իշխանյանի, իբրև թե «ամենահայտնին, ամենատարածվածը և... ամենաճշգրիտն է մինչ այս եղած թեորիաների մեջ»: Բ. Իշխանյանը գտնում է, որ Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը տնտեսության զարգացման վերաբերյալ հետազոտության ուրույն սիստեմ չեն ստեղծել, որ նրանց տնտեսական զարգացման տեսությունը «թերի» է, ամբողջական սիստեմ չէ, մինչդեռ Կ. Բյուխերի թեորիան «տնտեսագիտության վերջին խոսքըն է այդ սահմանում, որ մինչև այս խիստ ժողովրդականություն է վաստակել գիտական շրջաններում» (քաղվածքները բերում ենք ըստ Ս. Կասյանի ուսումնասիրության— Հ. Կ.):

Կասյանը չի առարկում Բ. Իշխանյանի այն մտքին, որ Կ. Բյուխերի թեորիան ժողովրդականություն է վայելում «գիտական շրջաններում»: Բայց նա բացատրում է, որ այդ «գիտական շրջանները» բաղկացած են բացառապես բուրժուական տնտեսագետներից և, եթե այնտեղ այն «ընդունվում է գրկաբաց», ապա պարզ պետք է լինի դրա դասակարգային բովանդակությունը: Մինչդեռ շատ բնական է, ասում է Ս. Կասյանը, որ Կ. Մարքսի ուսմունքն այդ շրջ-

[3] Ս. Կասյան, Գողության, տգիտության և տրհասության արդյունք (Սպատ ժամերի գրադմունք պ. Բ. Իշխանյանի Տնտեսական զարգացման ֆազերը բրոշյուրով), «Հոսանք», №№ 4, 5, 6, 7, 8, 10, 26-ը, 28-ը, 29-ը, 30-ը նոյեմբերի, 1-ը, 5-ը դեկտեմբերի, 1906 թ., Թիֆլիս:

[4] Ս. Կասյան, Թերուսը գրական ասպարեզում և գիտության մեջ. «Վտակ» №№ 62—70, 19-ը, 20-ը, 21-ը, 22-ը, 23-ը, 25-ը, 26-ը, 27-ը, 28-ը մարտի, 1908 թ.:



ջաններում չէր կարող ժողովրդականություն վայելել: Դրան հակառակ, նշում է Ս. Կասյանը, «Կ. Մարքսի զարգացման թեորիան... ատված է այդ շրջաններից և տարածված բանվորական և ոչ-պաշտոնական գիտական շրջաններում»:

Կասյանի ուսումնասիրությունը համոզիչ ցույց է տալիս, որ Բ. Իշխանյանն ըստ էության չի յուրացրել դիալեկտիկական և պատմական մատերիալիզմը, իսկ Կ. Մարքսի տնտեսական ուսմունքը, որն ըմբռնել է վուլգար կերպով, այդպես էլ մատուցում է իր գրական մարզանքներում: Հակառակ դեպքում, նշում է Ս. Կասյանը, նա Կ. Բյուխերի տնտեսական թեորիան չէր համարի «գիտության վերջին խոսք այս սահմանում»: Ս. Կասյանը հատկապես նշում է, որ Բ. Իշխանյանը չի ըմբռնել Կ. Մարքսի տնտեսական ուսմունքի սոցիալական էությունը: Չհասկանալով մարքսիստական տնտեսագիտությունը՝ Բ. Իշխանյանը չի կարողացել ըմբռնել Կ. Բյուխերի տնտեսական ուսմունքի բուն էությունը: Այլապես, բացատրում է Ս. Կասյանը, նա հազիվ թե պնդեր, թե Կ. Բյուխերի թեորիան «ամենից շատ ազդված է Մարքս-Էնգելսյան հայեցակետով», այն դեպքում, երբ Կ. Բյուխերն ինքը չի առարկում Վ. Զոմբարտի արտահայտած այն կարծիքին, թե իր «թեորիան ոչ մի ուշադրություն չի դարձնում ապագա սոցիալիստական տնտեսության վրա և թույլ չի տալիս շարունակել մինչև այդ տնտեսությունը»: Ցույց տալու համար՝ որքան է սխալվում Բ. Իշխանյանը՝ պնդելով, թե Կ. Բյուխերն իբր կանգնած է մարքսիստական տեսակետի վրա, Ս. Կասյանը վկայակոչում է նաև «մարքսիզմի ոխերիմ թշնամի պրոֆ. Շմոլերի» կարծիքն այն մասին, որ Կ. Մարքսի ուսմունքը «սխալ է և միակողմանի», իսկ այն ամենը, «ինչ որ Բյուխերն է ասում, կազմում է միմիայն» իր, այսինքն՝ մարքսիզմի թշնամի Շմոլերի «թեորիայի ցանկալի լրացումն ու մանրամասնությունը»:

Կասյանը ապացուցում է, որ Բ. Իշխանյանը, հակառակ մարքսիստական մեթոդի, կիրառում է Բյուխերի պատմական մեթոդը, հարկ չհամարելով անդրադառնալ այն իրողությանը, թե ինչպե՛ս և ինչո՛ւ այդ մեթոդը խանգարում է կանխատեսել տնտեսական զարգացման հետագա ընթացքը և ուսումնասիրությունը հասցնել մինչի կապիտալիստական տնտեսության հեռանկարը, այսինքն՝ ապագա սոցիալիստական տնտեսությունը: Չէ՛ որ Կ. Բյուխերը չէր ընդունում Կ. Մարքսի դիալեկտիկական և պատմական մատերիալիզմը, սոցիալիզմի մասին ողջ գիտական ուսմունքը: Հիշատակելով այն հանգամանքը, որ Բ. Իշխանյանը համակարծիք է Կ. Բյուխերով հրապուրված բուրժուական տընտեսագետներին, Ս. Կասյանն ավելի համոզիչ է բացահայտում, որ Բ. Իշխանյանը, իրեն հռչակելով «զուտ մարքսիստ», իրոք չի ըմբռնել Կ. Մարքսի տնտեսական ուսմունքը և առհասարակ՝ մարքսիզմը, որի հետևանք են և Կ. Բյուխերի մասին նրա թյուր ու սխալ հայտարարությունները:

Բուրժուական այդ տնտեսագետները հերքում էին սոցիալիզմին անցնելու հնարավորությունը, հենվելով տնտեսական փուլերի հաջորդականության մասին Կ. Բյուխերի զարգացրած տեսակետի վրա: Իսկ վերջինիս իմաստն այն է, ինչպես գրում է Ս. Կասյանը, ցույց տալ, որ եթե նախապես արտադրողն ու սպառողը նույն մարդն են եղել, ապա տնտեսական զարգացումն իրարից անջատել, հեռացրել է արտադրողին ու սպառողին, և որ այդ հեռացումը շարունակվում է: Այստեղից էլ, ըստ Բ. Իշխանյանի վկայակոչած բուրժուական տնտեսագետների, ճիշտ է Կ. Բյուխերի ուսմունքը, քանի որ դա հիմնավորում է այն միտքը, թե անիրական են արտադրողին և սպառողին կրկին միացնելու մասին սոցիալիստական ցանկությունները, դրանք չեն համապատասխանում «կյանքի օբյեկտիվ զարգացմանը»: Եվ այս ամենը, ասում է Ս. Կասյանը, կրկնում է Բ. Իշխանյանը, դրանով իսկ ցույց տալով, որ չի ըմբռնել մի կողմից՝ Կ. Մարքսին ու մարքսիզմը, մյուս կողմից՝ Կ. Բյուխերին՝ որպես ոչ մարքսիստ:

Կասյանը բացատրում է տնտեսության զարգացման վերաբերյալ բուրժուական տնտեսագիտության պատմական դպրոցի (որին պատկանում էր Բյուխերը) և դիալեկտիկական մատերիալիստական ըմբռնումների միջև եղած արմատական տարբերությունը: Պատմական դպրոցն ընդունում է աստիճանական զարգացումը, ըստ որի «փոփոխված երևույթները կապված են իրար հետ օրգանապես» (Ս. Կասյան), այսինքն՝ դրանց միջև իբրև թե չկա խզում, չկա անտագոնիզմ: Մինչդեռ, գրում է Ս. Կասյանը, դիալեկտիկական մեթոդը նույն այդ երևույթներին նայում է «դրանց շարժման, ծագման ու ոչնչացման տեսակետից... Այստեղ քանակական զարգացումը փոխվում է որակականի, մոմենտ, որը աստիճանական փոփոխման գաղափարի մեջ մտցնում է ոստյունի գաղափարը և այդպիսով կտրում երևույթների օրգանական կապը»: Բ. Իշխանյանը, ցույց է տալիս Ս. Կասյանը, չի ըմբռնել Կ. Բյուխերի և Կ. Մարքսի տնտեսագիտական հայացքների այս տրամագծային տարբերությունը և, Կ. Բյուխերի ազդեցությամբ, «տնտեսական ֆազերը ներկայացնում է... ոչ դիալեկտիկական մեթոդով» (Ս. Կասյան): Կ. Բյուխերին չեն հետաքրքրում տնտեսական տարբեր աստիճանների զարգացման ներքին տենդենցներն ու հակասությունները, տնտեսական երևույթների շարժման պատճառները, զարգացման հեռանկարները:

Իշխանյանը, ինչպես հարկն է, չէր յուրացրել նաև տնտեսագիության պատմական դպրոցի հիմնական գաղափարները: Ս. Կասյանը գրում է. Բ. Իշխանյանը չգիտե, որ Ա. Սմիթի և Դ. Ռիկարդոյի կլասիկ քաղաքատնտեսության դեմ ուղղված է եղել ռելյատիվիզմը, այսինքն՝ տընտեսագիտության պատմական դպրոցը. դրա ներկայացուցիչներից մեկն էլ Գ. Շմոլերն է, որին խորությամբ չըմբռնած Բ. Իշխանյանը համարում է նրան ռելյատիվիզմի հակառակորդ:

Կասյանը Բ. Իշխանյանի աշխարհայացքի մեջ բացահայտում է նրա տգիտությամբ պայմանավորված դուալիզմը: Բանն այն է, որ «պատմական հասարակական կյանքի երևույթների» զարգացման օրենքները նա տարբերում է տընտեսական կյանքի զարգացման օրենքներից: Այդ նույն տեսանկյունից իսկ նա հորինում և իրարից տարբերում է «ընդհանուր կուլտուրական-պատմական» և «զուտ տնտեսական» զարգացման դարաշրջաններ: Ս. Կասյանն այդ համարում է այն բանի հետևանք, որ Իշխանյանը զուրկ է հասարակության պատմության մարքսիստական ըմբռնումից, ուստի և մարդկային հասարակության զարգացումը նա չի դիտում որպես «միօրինակ, ամբողջական սիստեմ» և հորինում ու միմյանց հակադրում է «սոցիալական էվոլյուցիա» և «տնտեսական ձևերի զարգացում» հասկացությունները, գտնելով, որ դրանցից ամեն մեկն ունի «իր սեփական թեորիան»՝ իրարից անկախ:

Այս պարզաբանումներից հետո Ս. Կասյանը խորապես ներկացնում է տնտեսական զարգացման վերաբերյալ մարքսիստական ուսմունքի իշխանյանական վուլգարացումը: Նա ցույց է տալիս Բ. Իշխանյանի այն մտքի անհեթեթությունը, ըստ որի Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսն իբր ընդունում են «երկու կամ ավելի տնտեսության ու արդյունաբերության եղանակներ»: Ի՞նչ ասել է «երկու կամ ավելի» եղանակ, հարցնում է Ս. Կասյանը: Երկուսը երկուս է, ավելին՝ ավելի: Արտադրության եղանակները խաղալիք չեն, որ որոշակի չասվի— թե քանի՛սը և որո՛նք են դրանք: «Մի՞թե այդ հանճարները,— զարմանք է արտահայտում Ս. Կասյանը,— այնքան անհետևողական և մոռացկոտ գտնվեցին, որ մի երկու անգամ երկու, մյուս անգամ՝ անորոշ («ավելի») արտադրական եղանակ ընդունեին»: Մի այլ դեպքում Բ. Իշխանյանը Կ. Մարքսի ուսմունքին՝ որպես տնտեսական զարգացման տարբեր աստիճանների «ամենաէական» կրիտերիում, «տարբերիչ մոդուս» վերագրում է բուրժուական տնտեսագետ Լ. Շտայնից փոխառած, այսպես կոչված, «բանվորի իրավական դրություն» հասկացությունը: Բայց այստեղ էլ Ս. Կասյանը բացահայտում է, որ Իշխանյանը չի հասկացել, որ «իրավական դրությունը» հետևանք է արտադրության և բաշխման» և, որպես այդպիսին, չի կարող սկզբնապատճառի դերում հանդես գալ: Բ. Իշխանյանը նշում է, որ Մարքսի աշխատություններում շեշտը դրվում է դասակարգերի տնտեսական ու իրավական դրությունների վրա, որ դրանցում շահագործվողը հին դարերում ըստրուկն է, միջին դարերում՝ ճորտը, նորագույն դարերում՝ իրավապես ազատ բանվորը, և իբրև թե հենց այդ էլ «էական կրիտերիում է համարվում Մարքսի մոտ տարբերելու տնտեսական զարգացման շրջանները»: Այս առնչությամբ է Իշխանյանը վկայակոչում Լ. Շտայնի վերոհիշյալ միտքը, որտեղից և ակնհայտ է դառնում, որ Բ. Իշխանյանն ուղղակի կրկնում է բուրժուական տնտեսագետներին. «նույնիսկ մարքսիզմի քննադատներից մեկը,— գրում է Բ. Իշխանյանը,— Լ. Շտայնը, Մարքսի այդ կրիտերիումը համարում է միակ տարբերիչ մոդուսը տնտեսական աստիճանների»:

Բախշի Իշխանյանը բացարձակապես աղճատում, խեղաթյուրում էր արտադրաուժերի և արտադրահարաբերությունների մարքսիստական բնութագրությունը և շատ անմիտ հայտարարություններ անում պատմության մատերիալիստական ըմբռնման մասին: Կասյանը մեջբերում է Իշխանյանի հետևյալ միտքը. «Մինչդեռ ըստ մատերիալիստական տեսակետի, ինչպես որ հասարակական կազմի կրած փոփոխությունններն անմիջապես կախված են տնտեսական կյանքի հարաբերություններից, այնպես էլ տնտեսական կյանքի փոփոխությունները առաջնապես պայմանավորված են տեխնիկական միջոցների արդյունաբերական հարաբերությունների փոփոխություններով»: Կասյանը զարմացած բացականչում է. «Ի՞նչ աբսուրդ է սա»: Ստացվում է, վերջին հաշվով, որ տնտեսական կյանքի փոփոխությունները կախված են նույն տնտեսական կյանքի փոփոխություններից, այսինքն՝ եզրակացնում է Կասյանը, արեգակը կախվա՛ծ է արեգակի՛ց: Հոդվածի շարունակության մեջ Ս. Կասյանը հիմնավորում է նաև, որ Բ. Իշխանյանը շփոթում է վերնաշենքը բազիսի հետ:

Իր «ուսումնասիրության» առաջին գլխում, որը կրում է Տնտեսական զարգացման թեորիաները վերնագիրը, Իշխանյանը բուրժուական տնտեսագիտության ներկայացուցիչներ Ֆ. Լիստի, Բ. Հիլդեբրանդի, Կ. Ռոդբերտուսի, Գ. Շմոլերի և Կ. Բյուխերի տնտեսական թեորիաների շարքում առանձին-առանձին շարադրում է նաև Կարլ Մարքսի թեորիան և Ֆրիդրիխ Էնգելսի թեորիան: Ընդ որում, նա շեշտում է հատկապես այն միտքը, թե Մարքսն ու Էնգելսը դասվում են տնտեսագիտական «այն խմբի թեորիայի ներկայացուցիչների շարքին», որին պատկանում է նաև Կ. Ռոդբերտուսը: Բ. Իշխանյանն այս միտքը «հիմնավորում է» նրանով, որ իբրև թե և՛ Կ. Ռոդբերտուսը, և՛ Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը ունեն «մի հիմնական կրիտերիում՝ աշխատանքի բաժանումը»: Նման բնութագրումից հետո լրիվ արժեզուրկ են դառնում Բ. Իշխանյանի այն խոսքերը, թե «Տնտեսագիտության և սոցիալական գիտությունների մեջ եզակի տեղ են գրավում այդ հանճարեղ մտածողները»: Մի կողմից՝ գովեստի խոսքեր շռայլելով Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի հասցեին, Բ. Իշխանյանը մյուս կողմից բերում է մտացածին օրինակներ, որով տքնում է ցույց տալ Մարքսի և Էնգելսի տնտեսական հայացքների «տարբերությունը», այդպիսով իսկ ապացուցելով, որ ինքը չի ըմբռնել երկու մեծ մտածողների հայացքների ներդաշնակությունը՝ որպես միասնական, ամբողջական ուսմունք:

Հայտնի է, որ Գերմանիայում Կ. Բյուխերը, Ռուսաստանում Պ. Ստրուվեն և բուրժուական մի շարք այլ տնտեսագետներ ամեն կերպ ջանում էին հերքել սոցիալ-տնտեսական ֆորմացիաների մարքսիստական պարբերացումն ընդհանրապես և կապիտալիստական արդյունաբերության ստադիաների մարքսիստական դասակարգումը՝ մասնավորապես: Կարլ Մարքսի տնտեսական ուսմունքի դեմ ուղղված բուրժուական տնտեսագիտության այդ հայացքների պաշտպանությամբ հայ իրականության մեջ հանդես էր գալիս Բ. Իշխանյանը: Մարքսի տընտեսական ուսմունքի և Կ. Բյուխերի ու նրա համախոհների հայացքների միջև եղած սկըզբունքային հակադրությունները նա սքողում և վերջիններիս գովերգում էր՝ հետապնդելով որոշակի քաղաքական նպատակներ: Կապիտալիստական արդյունաբերության ձևերի իր դասակարգմամբ (որը Բ. Իշխանյանը համարում էր միակ լավագույնն ու ամբողջականը) Կ. Բյուխերը փաստորեն փորձում էր մարքսիզմը, մասնավորապես կապիտալիստական արդյունաբերության ստադիաների վերաբերյալ Կ. Մարքսի ուսմունքը զրկել դասակարգային, համընդհանուր նշանակությունից: Այստեղ կարող էին լիովին համընկնել Կ. Բյուխերի և Բ. Իշխանյանի հայացքները, այսինքն՝ սպեցիֆիզմն ու բուրժուական տնտեսագիտության հիմնական դրույթները: Առաջինը շեշտը դնում էր տեղական առանձնահատկությունների վրա, իսկ երկրորդը կապիտալիստական արդյունաբերության հիմնական ձևերն ու ստադիաները զրկում էր համընդհանուր նշանակությունից:

Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում աշխատության մեջ Վ. Ի. Լենինը ցույց է տվել, որ արդյունաբերության կապիտալիստական ձևերի ու ստադիաների մարքսյան դասակարգումն անհամեմատ ճիշտ ու բովանդակալից է, քան Բյուխերի և Հելդի դասակարգումը, որն այդ ժամանակ տարածված էր տնտեսագիտության մեջ[5]: Վ. Ի. Լենինը գրում էր, որ այդ դասակարգումը «մանուֆակտուրան շփոթում է ֆաբրիկայի հետ և մեծագնորդի համար կատարվող աշխատանքը դարձնում արդյունաբերության առանձին ձև»: Այդ նշանակում էր, բացատրում է Լենինը, «դասակարգման հիմք ընդունել զուտ արտաքին նշանները և աչքաթող անել տեխնիկայի, էկոնոմիկայի ու կենցաղային հանգամանքների այն էական առանձնահատկությունները, որոնք իրարից տարբերում են կապիտալիզմի մանուֆակտուրային և մեքենայական ժամանակաշրջանները»[6]: Լենինը գտնում էր, որ տանը կատարվող մինչկապիտալիստական աշխատանքը շատ կարևոր դեր է խաղում կապիտալիստական արդյունաբերության մեխանիզմում, և որ մեծագնորդի համար կատարվող աշխատանքը հատկապես բնորոշ է մինչմեքենայական կապիտալիզմի համար, բայց պատահում է (և ոչ փոքր չափերով) կապիտալիզմի զարգացման ամենատարբեր ժամանակաշրջաններում[7]: Վ. Ի. Լենինը պահանջում էր կոնկրետ մոտեցում ունենալ մեծագնորդի համար կատարվող աշխատանքի նկատմամբ. օրինակներով նա ցույց էր տալիս, որ տարբեր դեպքերում այն կարող է ունենալ «տարբեր բնույթ և տարբեր նշանակություն»: Այս կապակցությամբ էլ, չժխտելով արդյունաբերության մինչկապիտալիստական ձևերի ուսումնասիրության ասպարեզում Կ. Բյուխերի մատուցած ծառայությունը, Լենինն ընդգծում էր, որ «արդյունաբերության կապիտալիստական ձևերի նրա դասակարգումը» սխալ է:

Իշխանյանի Տնտեսական զարգացման ֆազերը շարադրանքի կասյանական քննադատությունն ապացույցն է այն իրողության, որ սպեցիֆիզմը մարքսիզմի թյուրըմբռնումն է՝ ընդհանրապես, և մարքսիստական տնտեսական ուսմունքի թյուրըմբռնումն ու խեղաթյուրումը՝ մասնավորապես: Դառնալով ազգային հարցին, նույն ձևով կարելի է ասել, որ սպեցիֆիզմը պրոլետարական ինտերնացիոնալիզմի խեղաթյուրումն է, ազգային առանձնահատկությունները զարգացման ընդհանուր օրինաչափություններից վեր դասելն ու դրանց հակադրելը, ի վերջո՝ պրոլետարական ինտերնացիոնալիզմը մանրբուրժուական նացիոնալիզմով նենգափո-

[5] В. И. Ленин, ПСС, т. 3, стр. 551:

[6] *Նույն տեղը:*

[7] *Տե՛ս նույն տեղը:*

խելը: Ըստ էության նույն սկզբունքային դիրքերից են բխում այսօր Ռոժե Գարոդիի և այլոց մանրբուրժուական ուսմունքները սոցիալիզմի տարբեր մոդելների մասին:

Ազգային տնտեսական կյանքի ու այլ առանձնահատկությունների հարցի մարքսիստական ըմբռնման պարզաբանմամբ և այդ կապակցությամբ սպեցիֆիկյան գաղափարների քննադատությամբ Ս. Կասյանը հանդես է եկել նաև 1907 թ. լույս տեսած «Օրեր» բոլշևիկյան լրագրի Հայկական իրականություն հոդվածում: Սարգիս Կասյանը յուրաքանչյուր ազգի հասարակական զարգացման համար գլխավորը համարում է ընդհանուր օրինաչափությունները: Բայց նա, միաժամանակ, չի անտեսում տեղական առանձնահատկությունները , դրանց տարբեր հնարավորությունները: Ընդհանուր օրինաչափությունները նա պայմանավորում է «ժամանակի տնտեսական ստրուկտուրայով»: Այստեղից ելնելով, Ս. Կասյանը տեսնում և շեշտում է միևնույն տնտեսակարգ ունեցող բոլոր ազգերի զարգացման միջև եղած ընդհանուրը, որից ելնելով և հիմնավորում է տարբեր ազգերի աշխատավորների շահերի ընդհանրությունը. այստեղից էլ բխում է նրանց համատեղ պայքարի ո՛չ միայն հնարավորությունը, այլև անհրաժեշտությունը՝ որպես կապիտալիզմի դեմ մղվող պայքարի հաջողության նախապայման:

Այսպիսով, Ս. Կասյանը և բոլշևիկները տրնտեսագիտորեն հաստատում էին ո՛չ միայն պրոլետարական ինտերնացիոնալիզմն առհասարակ, այլ Ռուսաստանում նոր տիպի բանվորական կուսակցությունը պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների վրա կառուցելու, երկրի բոլոր ազգերի բանվորների լավագույն ներկայացուցիչներին մեկ, միասնական կուսակցության մեջ համախմբելու անհրաժեշտությունը: Դա և՛ բունդական, և՛ հայկական՝ սպեցիֆիկյան, անջատողականության, մանրբուրժուական նացիոնալիզմի քննադատությունն էր:

Բայց, ինչպես ասվեց, դա տեղական առանձնահատկությունների հերքումը չէր: Ընդհակառակը, հնարավոր համարելով ամեն մի ազգի հասարակական կյանքի, առաջին հերթին՝ տնտեսական կյանքի առանձնահատկությունները, Ս. Կասյանը պարզաբանում էր, որ դրանք, իրենց հերթին, կարող են առաջ բերել աշխատավորների որոշակի ուրույն պահանջներ, շահեր, խնդիրներ: Այդ առանձնահատուկ կողմերով էր Կասյանը պայմանավորում «ազգային (հայկական, վրացական և այլն) իրականություն» հասկացությունը: Իսկ երբ հարկ էր լինում համադրել ազգերի ազգային առանձնահատկությունը նրանց միջև առկա ընդհանուրի հետ, Ս. Կասյանը գրում էր. «Ազգային (հայկական) իրականությունը... ստորադաս իրականություն է գերադաս իրականության մեջ»: «Գերադաս»-ը, Ս. Կասյանի բառերով ասած, «ժամանակի տնտեսական ստրուկտուրան է»: Այդ է, որ «տնտեսական թշվառության և քաղաքական իրավազրկության մատնելով պրոլետարիատին, հարկադրել է նրան սոցիալական պրիզմայում ստորին տեղը»: Այս տեսակետի հիման վրա Ս. Կասյանը զարգացնում է այն միտքը, որ հայկական և ամեն մի այլ ազգի պրոլետարիատ միջազգային պրոլետարիատի անբաժան ջոկատն է և որ նրա շահերն ընդհանուր են համառուսաստանյան և միջազգային պրոլետարիատի շահերի հետ: Այսպիսով, Ս. Կասյանը տեսականորեն հիմնավորում էր Բ. Իշխանյանի և նրան համախոհ սպեցիֆիկյան մյուս գործիչների՝ տեղական առանձնահատկությունների բերումով անջատողական պահանջներ ներկայացնելու սխալականությունը: Նա բազմակողմանի ցույց էր տալիս սոցիալ-դեմոկրատական բանվորական հայ կազմակերպության անջատողական քարոզների վնասակար էությունը, դրանց հակապրոլետարական, նացիոնալիստական բովանդակությունը: Դեռևս 1904 թվականին Ս. Կասյանը գրում էր. «Դեն ձգելով միջազգայնությունը և առաջին տեղը տալով ազգայնության, այդ կուսակցությունն ամենակոշտ կերպով մեղանչում է յուր սոցիալիստ-բանվորական (՞) սկզբունքին, եթե իրոք այդ սկզբունքը նրա հենակետն է, այլ ոչ թե «հանուն ազգի փրկության» դիմակ: Նացիոնալիզմը բացառումն է միջազգայնության, ...նա մթնեցնում է շահագործված դասակարգերի և միմիայն շահագործված բանվորի դասակարգային գիտակցությունը»:

Իրենց սոցիալ-դեմոկրատական բանվորական հայ կազմակերպություն կոչող սպեցիֆիկների հայացքների սուր քննադատությամբ հանդես են եկել Վ. Ի. Լենինի ականավոր զինակիցներ Ստ. Շահումյանը, Ս. Սպանդարյանը, Բ. Կնունյանցը, Ալ. Մյասնիկյանը և մյուս հայ լենինյանները: Ղեկավարվելով այդ կազմակերպության վերաբերյալ լենինյան գնահատականներով, նրանք պրոպագանդել են պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները և հայ աշխատավորներին համախմբել ցարիզմի ու բուրժուազիայի դեմ Անդրկովկասի և Ռուսաստանի բազմազգ պրոլետարիատի ծավալած համատեղ պայքարի միասնական շարքերում:

Հ. Ն. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

# ԱԿԱՆԱՎՈՐ ԼԵՆԻՆՅԱՆԸ

## (ԱԼԵՔՍԱՆԴՐ ՄՅԱՍՆԻԿՅԱՆԻ ԾՆՆԴՅԱՆ 90-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)



ՉԼԻՆԵՐ ՉԱՐԱԳՈՒՇԱԿ ԱՂԵՏԸ, գուցե այսօր էլ նա մեզ հետ լիներ՝ ավելի բազմապատկած իր մեծ ավանդը նոր հասարակության կառուցման գործում: Սակայն, ինչպես ասում են, մարդու կյանքի նշանակությունը ոչ թե դրա տևողության, այլ բովանդակության մեջ է: Ալեքսանդր Մյասնիկյանն ապրեց ընդամենը 39 տարի, բայց ունեցավ մեծագործ կյանք: Նա Լենինի աշակերտն էր ու զինակիցը, մարքսիզմի տեսաբան, սոցիոլոգ ու փիլիսոփա, տնտեսագետ, գրականագետ, տաղանդավոր հրապարակախոս ու ժուռնալիստ, խոշոր կազմակերպիչ, հմուտ քաղաքագետ ու անվանի զորավար: Թվում է՝ այդ բոլորը դժվար է վերագրել մի մարդու, բայց դա փաստ է, անհերքելի իրողություն...

Պատմության մեջ իսկական ղեկավարների ձևավորման համար անհրաժեշտ են երկու կարևոր նախադրյալներ. անձնական ընդունակություններ և համապատասխան պայմաններ: Այդ սուբյեկտիվ և օբյեկտիվ գործոնների երջանիկ զուգադիպությունը ցայտուն կերպով դրսևորվեց Ալ. Մյասնիկյանի արգասավոր գործունեության մեջ:

Ալեքսանդր Աստվածատուրի (Ֆյոդորի) Մյասնիկյանը ծնվել է 1886 թ. փետրվարի 9-ին, Դոնի Ռոստովի Նոր Նախիջևանում, ուր և նա անցկացրել է իր մանկությունն ու պատանեկությունը: Վաղ հասակից կորցնելով հորը, նա ստիպված էր կրել ժամանակի չարքաշ կյանքի բոլոր դառնությունները: Դրա հետ միասին պատանի Ալեքսանդրը, սովորելով Սուրբխաչ վանքին առընթեր հայկական ծխական գիշերօթիկ դպրոցում, ցուցաբերում է արտակարգ սեր գիտության ու գրականության նկատմամբ: Այնուհետև նա ուսանում է Նոր Նախիջևանի հայկական թեմական դպրոցում և ոչ միայն կլանվում անհագուրդ ընթերցանությամբ, կարդում հայ և ռուս գրողների ստեղծագործությունները, համակվում Մ. Նալբանդյանի ազատատենչ գաղափարներով, այլև համարձակորեն մտնում հասարակական կյանքի մեջ, ակտիվորեն մասնակցում ընդհատակյա աշակերտական խմբակների գործունեությանը: Դա քսաներորդ դարի շեմին էր, երբ Ռուսաստանում հասունանում էր ժողովրդական հեղափոխությունը, իսկ Դոնի Ռոստովում 1902 թվականին տեղի էր ունեցել խոշոր գործադուլ-ցույց, որն իր հորձանքի մեջ էր առել նաև Նոր-Նախիջևանը: Այդ ամենն իր բարերար ազդեցությունը թողեց երիտասարդ Մյասնիկյանի դեմոկրատական-հեղափոխական աշխարհայացքի կազմավորման վրա:

Ուսումնատենչ Մյասնիկյանը ձգտում էր դեպի նոր հորիզոններ: 1904 թ. նա մեկնում է Մոսկվա և ընդունվում Լազարյան ճեմարան: Այստեղ ուսումնասիրում է մարքսիստական գրականությունը, կարդում Վ. Ի. Լենինի աշխատությունները, ընդգրկվում սոցիալ-դեմոկրատական շարժման մեջ, մասնակցում Մոսկվայի պրոլետարիատի հերոսամարտերին: Թրծվելով ռուսական առաջին հեղափոխության թեժ բոցերում, Ալ. Մյասնիկյանը 1906 թ. Դոնի Ռոստովի կազմակերպության միջոցով մտնում է ՌՍԴԲԿ շարքերը, զինվորագրվում

լենինյան բանակին: Նույն թվականին «Նոր կյանք» թերթում լույս է տեսնում նրա «Ներկա մոմենտը» հոդվածը, որտեղ հաստատակամությամբ պաշտպանվում և պրոպագանդվում են հեղափոխության շարժիչ ուժերի մասին լենինյան հայացքները:

Ակներև է, որ հանձին Ալ. Մյասնիկյանի, բարձրանում է ցարիզմի մի նոր «երդվյալ թշնամի», և 1906 թ. աշնանը նրան ձերբակալում են ու արտաքսում Մոսկվայից: Բայց նա արդեն անցել էր Ռուբիկոնը և շարունակում է իր հեղափոխական գործունեությունը պրոլետարական Բաքվում, ուր աշխատում էին բազմաթիվ ականավոր բոլշևիկներ, այդ թվում Ստ. Շահումյանը, որին Ալ. Մյասնիկյանն իրավացիորեն անվանել է «կովկասյան բոլշևիզմի արժանավոր պարագլուխ»,«կովկասյան գիտակից բանվորության լավագույն սիրտը»: Մյասնիկյանը քաղաքական-կազմակերպչական գործունեություն է ծավալում բանվորական շրջաններում, տանում ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանք, կարդում զեկուցումներ ժամանակի կենսական հարցերի մասին, տպագրում մոբիլիզացնող հոդվածներ: Ահա դրանցից մեկը՝ «Ռամկավար հանրապետություն», որի մեջ նա մերկացնում է ցարական միահեծանությունը և շեշտում, թե այսօր Ռուսաստանում կատաղի կռիվ է ընթանում ժողովրդի և բռնակալության միջև: Հեղափոխությունը դեռ չի հասել իր վախճանին: Նրա առաջատար ուժը պրոլետարիատն է. աշխատավոր գյուղացիության գլուխն անցած՝ Ռուսաստանի պրոլետարիատն այժմ ձգտում է ունենալ իսկական դեմոկրատական հանրապետություն: Նա հաստատ համոզված է, որ սոցիալիզմը կհաղթանակի:

1908 թ. աշնանը նա կրկին Մոսկվայում է, ուր, համալսարանի իրավաբանական ֆակուլտետում սովորելու հետ միասին, տանում է ընդհատակյա կուսակցական աշխատանք: Մոսկվայի համալսարանն ավարտում է առաջին կարգի դիպլոմով: 1911—1912 թթ. զորակոչվում է բանակ, իսկ հետո աշխատում որպես երդվյալ հավատարմատարի օգնական:

Այդ ժամանակաշրջանում Ալ. Մյասնիկյանի տարերքը հեղափոխական գործունեությունն էր ուսանողների, բանվորների ու զինվորների շրջանում: Նա գրում է մի շարք աշխատություններ, որոնց մեջ մի կողմից՝ պրոպագանդում է մարքսիստական-լենինյան գաղափարները, իսկ մյուս կողմից՝ մերկացնում բուրժուական, մանրբուրժուական օպորտունիստական հոսանքները: Ահա, օրինակ, Արդի տնտեսական կյանքը աշխատությունը, որը գրված է փաստագրական հարուստ նյութի և գիտական խոր վերլուծության հիման վրա: Ալ. Մյասնիկյանը, մասնավորապես օգտագործելով Կ. Մարքսի ու Վ. Ի. Լենինի երկերը, պատկերում է Ռուսաստանի սոցիալ-տնտեսական զարգացման ուղին և շեշտում, որ կապիտալիզմն արդեն «իր տիրապետության դրոշմն է դրել դրա վրա»: Ուստի, լիովին սնանկ են նարոդնիկական տիպի գունազարդումներն ու խեղաթյուրումները, գյուղական համայնքի մասին ուտոպիական քարոզը, որը ժառանգեցին նաև հայ ինչակյաններն ու դաշնակցականները: Հեղափոխականի խնդիրն է ոչ թե կոծկել իրականությունը և օդային ամրոցներ կառուցել, այլ ճիշտ արտացոլել փաստերը և կատարել համապատասխան հետևություններ:

Ալ. Մյասնիկյանը, հետևելով Լենինին, ազգային հարցի լուծումը կապում է սոցիալական մեծ պրոբլեմի՝ բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների, ժողովուրդների ազատագրման հետ:

Տակավին պատանի տարիներից Ալ. Մյասնիկյանը ցուցաբերում է սեր գրականության ու արվեստի նկատմամբ, լուսաբանում դրանց նշանակությունը աշխատավոր մասսաների դաստիարակության գործում: Գրականագիտությունը դառնում է նրա կուսակցական-քաղաքական գործունեության բաղկացուցիչ մասը: Բնորոշ է, որ Մյասնիկյանի սոցիոլոգիական-գրականագիտական առաջին ուսումնասիրությունը նվիրված է Մ. Նալբանդյանին. դրանում մարքսիստական դիրքերից տրված է մեծանուն հեղափոխական դեմոկրատի ստեղծագործական ուղին: Նա շեշտում է, որ Նալբանդյանի աշխարհայացքը ձևավորվել է ռուսական կյանքի և ռուս մտածողների միջավայրում, հատկապես զգալի է Գերցենի, Բելինսկու, Չեռնիշևսկու և Դոբրոլյուբովի ազդեցությունը: Նալբանդյանի պահանջն է՝ ամեն ինչ ժողովրդի համար և ամենայն ինչ նրա միջոցով: Այս բնութագրումը խիստ բնորոշ է ու ամբողջական:

Որտեղ և ինչ պայմաններում էլ գործեր Ալ. Մյասնիկյանը, ում և ինչի մասին էլ գրեր նա, մշտապես ուշադրության կենտրոնում էր պահում ժողովրդական զանգվածների հեղափոխական համախմբման հարցը, բոլոր ազգերի աշխատավորների դասակարգային պայքարի կազմակերպումը ցարիզմի ու կապիտալիզմի դեմ: Նա շեշտում էր, որ հայ ժողովրդի փրկությունը համառուսական հեղափոխական շարժման ու նրա հաղթանակի մեջ է, ուստի, նրա ակտիվ մասնակցությունն այդ շարժմանը և՛ օրինաչափ է, և՛ անհրաժեշտ:

1914 Թ. ՊԱՅԹԵՑ ԱՌԱՋԻՆ համաշխարհային իմպերիալիստական պատերազմը, և պրոպորշչիկ Ալ. Մյասնիկյանը կանչվեց բանակ:



Այս շրջանում ևս նրա համար գլխավորը հեղափոխական գործունեությունն էր: Արևմտյան ռազմաճակատում նա կազմակերպեց ընդհատակյա բոլշևիկյան խմբեր, ծավալեց լայն բացատրական աշխատանք՝ դատապարտելով թալանչիական պատերազմը և զինվորներին տրամադրելով ցարիզմի դեմ: Նա ջանք չէր խնայում իմպերիալիստական պատերազմը քաղաքացիականի վերածելու լենինյան լոզունգի կենսագործման համար:

1917 թվականի փետրվար. կործանվեց Ռոմանովների արյունոտ միապետությունը: Ալ. Մյասնիկյանը ռուսական երկրորդ հեղափոխության ակտիվ մասնակիցն էր. Մ. Վ. Ֆրունզեի հետ միասին նա անմիջապես ստեղծեց Մինսկի բանվորների ու զինվորների դեպուտատների սովետը: Մյասնիկյանը, զինված Վ. Ի. Լենինի Ապրիլյան թեզիսներով, պայքարում էր բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունը սոցիալիստականի վերաճելու համար: Պրոֆեսիոնալ հեղափոխական Ալ. Մյասնիկյանը դառնում է Արևմտյան ռազմաճակատի ու երկրամասի բոլշևիկների ճանաչված ղեկավարներից մեկը, հոծ մասսաների սիրելի «Ալյոշան», «Մյասնիկովը». այդպիսի անուններով էր նա հանդես գալիս իր իսկ հիմնած ու խմբագրած «Զվեզդա» բոլշևիկյան թերթում, որի առաջին համարը լույս տեսավ 1917 թ. հուլիսի 27-ին: Հենց այդտեղ էլ տպագրվել է Ալ. Մյասնիկյանի «Բոլշևիկները» հոդվածը, ուր նա մերկացնում էր «երկոտասան լեզուների» գրպարտությունները լենինյան կուսակցության հասցեին և ընդգծում, որ միայն նա է հանդիսանում պրոլետարիատի ու բոլոր աշխատավորների շահերի արտահայտիչը, նրանց ազատագրական պայքարի կազմակերպիչն ու ղեկավարը. «Բոլշևիկները հեղափոխական սոցիալ-դեմոկրատներ են: Նրանք բանվոր դասակարգի գիտակից խավերի ներկայացուցիչներն են: Եվ խոշոր ու աչքի ընկնող կենտրոնների պրոլետարիատը գնում է բոլշևիկների կուսակցության հետևից: Նրա հետևից են գնում հեղափոխության կենդանի մասսաները, հեղափոխության զինվորները» (Ընտիր երկեր, Հայպետհրատ, 1957, էջ 137):

Ալ. Մյասնիկյանը, որպես Մինսկի բոլշևիկների պատվիրակ, մեկնում է Պետրոգրադ, մասնակցում կուսակցության VI համագումարին, որտեղ զեկուցում է հատկապես բանակում կուսակցական աշխատանքն ուժեղացնելու հարցի մասին և պաշտպանում զինված ապստամբության դիրքորոշումը: Համագումարում Պ. Ջափարիձեի միջոցով նա իրազեկ է դառնում կովկասյան իրադարձություններին և ողջույնի նամակ ու հոդված («Պրոլետարիատն ու բուրժուազիան արդի հեղափոխության մեջ») ուղարկում հայերեն «Սոցիալ-դեմոկրատ» թերթին, որը հրատարակվում էր Բաքվում Ստ. Շահումյանի խմբագրությամբ: Հետհամագումարյան շրջանում Ալ. Մյասնիկյանը, Մ. Ֆրունզեի, Վ. Կնորինի, Ա. Մոգիլևսկու և ուրիշների հետ միասին, գլխավորում է Բելոռուսիայի ու Արևմտյան ռազմաճակատի բոլշևիկների, աշխատավորների ու զինվորների պայքարը սովետական իշխանության համար: 1917 թ. սեպտեմբերին նա ընտրվում է ՌՍԴԲԿ (բ) Հյուսիս-արևմտյան մարզային կոմիտեի նախագահ և անմիջականորեն ղեկավարում սոցիալիստական հեղափոխության համար մղվող պայքարը Մինսկում ու մարզում:

«Ավրորա»-ի պատմական համազարկերով ազդարարվում է մեծ Հոկտեմբերի հաղթանակը: Այդ լուրը ստանալով, Ալ. Մյասնիկյանն անհապաղ հանդես է գալիս մասսաների առջև: Հոկտեմբերի 25-ին Մինսկում ևս իշխանությունն անցնում է սովետների ձեռքը: Մեկ օր հետո, ՌՍԴԲԿ (բ) Հյուսիս-Արևմտյան մարզային կոմիտեի որոշմամբ, ստեղծվում է ռազմա-հեղափոխական կոմիտե՝ Ալ. Մյասնիկյանի նախագահությամբ, որը և գլխավորում է Բելոռուսիայում սովետական իշխանության համար մղվող պայքարը: Պահանջվեց ջախջախիչ հարվածներ հասցնել բազմապիսի թշնամիների, այդ թվում Մոգիլյովում գտնվող հին բանակի զորակայանին, որը դարձել էր հակահեղափոխության բույն: 1917 թ. նոյեմբերի 25-ին՝ Արևմտյան ռազմաճակատի զինվորական կոմիտեների երկրորդ համագումարում ՌՍԴԲԿ (բ) Կենտկոմի ներկայացուցիչ Գ. Օրջոնիկիձեի առաջարկությամբ Ալ. Մյասնիկյանն ընտրվում է Արևմտյան ռազմաճակատի գլխավոր հրամանատար. «Ամբողջ համագումարը,— գրել է Գ. Օրջոնիկիձեն, — ոտքի կանգնած դիմավորեց իր կողմից հենց նոր ընտրված ռազմաճակատի հեղափոխական հրամանատարին: Այնուհետև ամբիոն բարձրացավ մեր սիրելի Ալյոշան՝ մոխրագույն հին շինելով: Ամբողջ դահլիճը խանդավառությամբ ողջունեց նրան: Դա նոր հրամանատար էր, որին ծնել էր Հոկտեմբերյան հեղափոխությունը, դա նա էր, որ փոխարինում էր հին՝ ոսկեգույն ուսադիրներով գեներալներին: Համագումարը բուռն կերպով ծափահարում է իր հարազատ եղբորը» («Պրավդա», 1925 թ., № 69):

Ալ. Մյասնիկյանը համարվում է սովետական զինված ուժերի առաջին ընտրովի հրամանատարը, որը միաժամանակ դարձավ գլխավոր հրամանատար Ն. Վ. Կրիլենկոյի տեղակալը, իսկ 1917 թ. դեկտեմբերին կարճ ժամանակով փոխարինեց նրան: Նա վիթխարի աշխատանք ծավալեց բանվորա-գյուղացիական կարմիր բանակի ստեղծման և սովետական պետության պաշտպանության համար:

Ալ. Մյասնիկյանն այն տաղանդավոր կոմու-

նիստ զորավարներից է, որին կուսակցությունն աճեցրեց և ըստ անհրաժեշտության ուղարկում էր քաղաքացիական պատերազմի ամենադժվար ճակատները. «Երբ այս կամ այն ռազմաճակատում ուժեղանում էր ռազմական վտանգը,— ասել է Ս. Մ. Կիրովը,— կուսակցությունը և հեղափոխական իշխանությունը նրան երկրի մի ծայրից փոխադրել են մյուս ծայրը: Եվ ամենուրեք ու ամեն տեղ Մյասնիկյանը պատվով է կատարել հեղափոխականի իր պարտականությունները... Կարճ ասած՝ Մյասնիկյանի կյանքը— դա մեր հեղափոխության կորագիծն է» («Բակինսկի ռաբոչի», № 68, 1925 թ.):

1918 թ. հունվարի սկզբին Ալ. Մյասնիկյանը մեկնում է Պետրոգրադ և ակտիվորեն մասնակցում Սահմանադիր ժողովի ցրմանը: Այդ ժամանակ էլ կատարվում է նրա երկարամյա իղձը՝ անձնական հանդիպումը Վ. Ի. Լենինի հետ, որն այնուհետև վերածվում է անխախտ բարեկամության: Կուսակցության առաջնորդն ըստ արժանվույն է գնահատում Ալ. Մյասնիկյանին և ամեն կերպ խրախուսում նրա առաջքաշումը: Մյասնիկյանը հունվարի 10—18-ը մասնակցում է Սովետների համառուսաստանյան III համագումարին, որտեղ ընդունվում է Վ. Ի. Լենինի գրած «Աշխատավոր և շահագործվող ժողովուրդների իրավունքների Դեկլարացիան», հենց այն սահմանադրական փաստաթուղթը, որը մինչ այդ մերժել էր էսեռա-մենշևիկյան Սահմանադիր ժողովը: Համագումարից հետո նա վերադառնում է Արևմտյան ռազմաճակատ և գլխավորում գերմանական զավթիչների դեմ մղվող կռիվը Բելոռուսիայում, իսկ ապրիլի 10—14-ը Սմոլենսկում մասնակցում Արևմտյան մարզի Սովետների II համագումարին, ուր ընտրվում է մարզգործկոմի նախագահ: Ապա նրան տեսնում ենք Արևելյան ռազմաճակատում: Վ. Ի. Լենինը 1918 թ. մայիսի 31-ին Պենզայի նահանգային գործկոմի նախագահին հեռագրում է. «Երբ կգա Մյասնիկովը, նրան բերեք ապարատի մոտ՝ ինձ հետ խոսելու համար» (Ленинский сборник, т. XVIII, стр. 200): Մյասնիկյանը, որպես Վոլգյան ռազմաճակատի հրամանատար, ամրապնդում է կարմիր բանակի զորամասերը և գործողություններ ծավալում չեխական խռովարարների ու սպիտակգվարդիականների դեմ: Հունիսի 25-ին Ալ. Մյասնիկյանը Վ. Ի. Լենինին և Յա. Մ. Սվերդլովին ներկայացնում է զեկուցագիր Արևելյան ռազմաճակատի դրության կապակցությամբ: Նա ընդգրկվում է հանրապետության ռազմա-հեղափոխական խորհրդի կազմի մեջ:

1918 թ. կեսերին Ալ. Մյասնիկյանը նորից Բելոռուսիայում է և անմիջականորեն գլխավորում է այնտեղ ծավալված հեղափոխական-ազատագրական պայքարն ընդդեմ սովետական իշխանության ներքին ու արտաքին թշնամիների: Հերթի է դրվում Սովետական Բելոռուսիայի ու նրա կոմունիստական կուսակցության կազմավորման հարցը, որը դեկտեմբերին քննարկվում է Մոսկվայում՝ ՌԿ(բ)Կ Կենտկոմում: Նիստին մասնակցում է նաև Ալ. Մյասնիկյանը: Դեկտեմբերի 30—31-ը Սմոլենսկում տեղի է ունենում Հյուսիս-Արևմտյան մարզի VI կուսակցական կոնֆերանսը, որն իրեն հայտարարեց Բելոռուսիայի Կ(բ)Կ-ի I կամ հիմնադիր համագումար: Նախագահը Ալ. Մյասնիկյանն էր, որը զեկուցեց ընթացիկ մոմենտի մասին և ցույց տվեց, որ միջազգային իմպերիալիզմը փորձում է Բելոռուսիայի տարածքով ներխուժել Սովետական Ռուսաստան, բայց նրան տրվում է վճռական հակահարված և արդեն ժամանակն է, որ մեր մարզը ևս, կամ ինչպես այն ժամանակ անվանում էին «արևմըտյան կոմունան», պաշտոնապես ինքնորոշվի, «...իրեն հայտարարի ինքնուրույն Բելոռուսիայի Սովետական Սոցիալիստական Հանրապետություն» (Избранные произведения, Ереван, 1965, стр. 191):

Այս խոսքերն ընդունվում են բուռն ծափահարություններով, և համագումարի որոշմամբ հռչակվում է ԲՍՍՀ-ի կազմավորումը: Համագումարն ընտրում է ԲԿ(բ)Կ Կենտկոմ: Կազմվում է Կենտկոմի բյուրո՝ Ալ. Մյասնիկյանի նախագահությամբ: Հաստատվում է նաև Բելոռուսիայի բանվորա-գյուղացիական ժամանակավոր կառավարության կազմը, որը 1919 թ. հունվարի 1-ին մանիֆեստ է հրատարակում ԲՍՍՀ-ի կազմավորման մասին: Արդեն հունվարի 5-ին կառավարությունը տեղափոխվում է Մինսկ, որը և դառնում է Սովետական Բելոռուսիայի մայրաքաղաքը: Փետրվարի 2—4-ը տեղի է ունենում Բելոռուսիայի սովետների I համագումարը, որն ընդունում է հանրապետության սահմանադրությունը և Կենտգործկոմի նախագահ ընտրում Ալ. Մյասնիկյանին:

Այդպիսով, ականավոր լենինյան Ալ. Մյասնիկյանը Բելոռուսիայի կոմունիստական կուսակցության հիմնադիրներից և Բելոռուսիայում սովետական իշխանության կազմակերպիչներից է: Պատահական չէ, որ հետագայում Բելոռուսիայի Կենտգործկոմն ու ժողկոմսովետը որոշում ընդունեցին հանրապետության կառավարական տանը դնել Ալ. Մյասնիկյանի հուշարձանը:

Ալ. Մյասնիկյանը կանգնած էր պրոլետարիատի դիկտատուրայի ամրապնդման մարտական դիրքում: Նա 1919 թ. մարտին մասնակցեց ՌԿ(բ)Կ VIII համագումարին և նոր հանդիպումներ ունեցավ Վ. Ի. Լենինի հետ: Ալ. Մյասնիկյանը, զոտեպնդված լենինյան ցուցումներով, անդուլ պայքար մղեց համագումարի որոշումների կենսագործման համար: Շուտով նա, ՌԿ(բ)Կ Կենտկոմի որոշմամբ, մշտական աշխատանքի է անցնում Մոսկվայում: Սովետական պետության ահեղ փորձության պահին՝ 1919 թ. ապրիլին, նա նշանակվում է մայրաքաղաքի զինվորական կազմակերպիչ և ցուցաբերում բացառիկ հմտություն, ծավալում անդուլ պաշտպանական գործունեություն, անցկացնում բանվորա-գյուղացիական կանոնավոր և կարգապահ բանակի ամրապնդման լենինյան գիծ: «Կուսակցությունը և կարմիր բանակը» հոդվածում, որը 1919 թ. մայիսի 11-ին տպագրվեց «Պրավդա»-ում, նա գրել է. «Բանակի ոգին նրա կարգապահությունն է: Առանց գիտակցության չկա կարգապահություն: Իսկ գիտակցությունը տրվում է քաղաքական դաստիարակությամբ, որն անհնարին է առանց կուսակցական աշխատանքի, առանց մեր կուսակցության» (Ընտիր երկեր, էջ 224):

1919 թ. սեպտեմբերին Ալ. Մյասնիկյանը ընտրվում է ՌԿ(բ)Կ Մոսկվայի կոմիտեի քարտուղար և այդ պատասխանատու պոստում իրեն դրսևորում որպես տաղանդավոր կուսակցական գործիչ: Նա խորամուխ է լինում մայրաքաղաքի քաղաքական, տնտեսական ու կուլտուրական կյանքի բոլոր ոլորտներում, ցուցաբերում բազմակողմանի գործիմացություն և անհողդողդ կամք ու եռանդ՝ կոմունիստների ավանգարդային դերի բարձրացման և անկուսակցական մասսաների մոբիլիզացման ասպարեզում:

Ալ. Մյասնիկյանը բացառիկ ուշադրություն էր նվիրում Մոսկվայի կուսակցական կազմակերպության գաղափարական աճին ու մարտունակության բարձրացմանը, նրա շարքերի միասնության ամրապնդմանը: Նա անձամբ հանդես էր գալիս զեկուցումներով ու գլխավորում կարևոր միջոցառումների անցկացումը: Այդ գործի մեջ ընդգրկված էին բազմաթիվ կուսակցական ու պետական գործիչներ:

Մոսկվայում Ալ. Մյասնիկյանն աշխատանքի բնույթով հաճախակի հանդիպում է մեծ առաջնորդի հետ, զրուցում ամենաբազմազան հարցերի շուրջ, ստանում իմաստուն խորհուրդներ ու ցուցումներ: Որպես ՌԿ(բ)Կ Մոսկվայի կոմիտեի քարտուղար, Մյասնիկյանը բազմիցս ուղեկցել է Վ. Ի. Լենինին դեպի մայրաքաղաքի շրջանները, ֆաբրիկաներն ու գործարանները, բանվորական հավաքույթները և լսել նրա ոգեշնչող, ապագայի նկատմամբ պայծառ հավատով տոգորված ելույթները. «Այն ժամանակներում,— գրել է Ալ. Մյասնիկյանը,— այդպիսի լավատեսությամբ կարող էր շնչել այն մարդը, որն իր հոգու բոլոր թելերով, իր բոլոր մտքերով, իր ողջ էությամբ օրգանապես կապված էր բանվոր դասակարգի հետ, որի կարողությանը և ուժին նա անսահմանորեն հավատում էր, այն մարդը, որը, հենվելով դրա վրա, տեսնում էր շատ հեռուն և հենց դրանով էլ կարող էր համարձակ կերպով նախագուշակել սովետական իշխանության բախտը...» (նույն տեղը, էջ 466):

1920 թ. ապրիլի 23-ին Ալ. Մյասնիկյանը ղեկավարում է Մոսկվայի կուսակցական կոմիտեի կազմակերպած հանդիսավոր երեկոն՝ նվիրված Վ. Ի. Լենինի ծննդյան 50-ամյակին: Ինչպես պատմում է Մյասնիկյանը, այդ մասին չի հայտնըվել Վլադիմիր Իլյիչին, քանի որ նա դեմ էր իր անձի մեծարմանը և ընդհանրապես վճռականորեն դատապարտում էր անձի պաշտամունքը: Մի կերպ հաջողվում է նրան բերել միայն համերգային բաժնին և երբ շատ են խնդրում որևէ բան ասել. Լենինը շնորհակալություն է հայտնում, որ իրեն ազատել են «հոբելյանական ճառեր լսելուց», իսկ իր հակիրճ խոսքն էլ նվիրում է կուսակցությանը, զգուշացնում, որ կոմունիստները երբեք չտարվեն հաջողություններով ու զերծ մնան գոռոզամտությունից:

Նկատենք, որ հանդիպման առաջին բաժնում հիմնականում պատմվել են հիշողություններ, իսկ մամուլում հրապարակվել մի շարք հոդվածներ: Դրանց մեջ էր Ալ. Մյասնիկյանի «Վ. Ի. Լենինը որպես տեսաբան» հոդվածը, որը լույս տեսավ իր իսկ խմբագրությամբ հրատարակվող «Կոմունիստիչեսկի տրուդ» լրագրում:

Անտանտի նոր արշավանքի կապակցությամբ, երբ դարձյալ ծանրանում է սովետական երկրի վիճակը, Ալ. Մյասնիկյանը 1920 թ. մայիսի վերջին համատեղության կարգով նշանակվում է Արևմտյան ռազմաճակատի քաղվարչության պետ և խոշոր դեր կատարում սպիտակ լեհերի ջախջախման ու Բելոռուսիայի ազատագրման գործում: Հոկտեմբերին նա նորից Մոսկվայում էր և աշխատում էր որպես ռազմաճակատի օգնության հատուկ լիազոր:

Քաղաքացիական պատերազմի հաղթական ավարտից հետո, Ալ. Մյասնիկյանը Մոսկվայում ակտիվորեն մասնակցում է ժողովրդական տընտեսության վերականգնմանն ու սոցիալիստական շինարարության ծավալմանը: Նա մեծ աշխատանք է տանում կուսակցության շարքերի միասնության ամրապնդման համար և անհաշտ պայքար մղում հակալենինյան խմբավորումների դեմ: Արհմիութենական դիսկուսիայի ժամանակ նա հետևողականորեն անցկացնում է լենինյան գիծը՝ ընդդեմ տրոցկիստների, «բանվորական օպոզիցիայի», «դեցիստների» ու նըմանների: Ալ. Մյասնիկյանը 1921 թ. հրատարակում է «Հանուն կուսակցության» աշխատությունը, որտեղ բազմակողմանիորեն մերկացնում է ֆրակցիոներներին և շեշտում, որ պետք

է կուսակցությունը մաքրել դեմագոգներից ու շաղակրատներից, ամեն մեկի մասին դատել նրա գործերով. «Կուսակցության շարքային անդամը և բանվորը ոչ թե փքուն ֆրազների, այլ գործի կարիքն են զգում...», իսկական գործի համար էլ «...պահանջվում է կուսակցության միասնություն, որովհետև առանց դրան՝ չկա միասնական կամք, իսկ առանց միասնական կամքի՝ չի կարելի ստեղծել ու կառուցել» (նույն տեղը, էջ 330):

ՌԿ(բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ ՈՐՈՇՄԱՄԲ Ալ. Մյասնիկյանը 1921 թ. գարնանը աշխատանքի է ուղարկվում Անդրկովկաս: Նա իր հետ բերում է «Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների հանրապետության կոմունիստ ընկերներին» Վ. Ի. Լենինի հայտնի նամակը, որը դարձավ երկրամասի կուսակցական ու սովետական մարմինների գործունեության ուղեցույցը:

1921 թ. մայիսից Ալ. Մյասնիկյանն աշխատում է որպես Սովետական Հայաստանի Ժողկոմսովետի նախագահ ու ռազմական գործերի ժողկոմ: Նրա ղեկավարությամբ լիկվիդացվում են դաշնակցական բանդաները Զանգեզուրում ու այլ վայրերում, ծավալվում է վիթխարի աշխատանք՝ բզկտված ու սովահար Հայաստանը ոտքի կանգնեցնելու, նրա տնտեսությունն ու մշակույթը զարգացնելու համար:

Ալ. Մյասնիկյանը, Գ. Օրջոնիկիձեի, Ս. Մ. Կիրովի հետ միասին, եռանդուն գործունեություն է ծավալում Անդրֆեդերացիայի ու ՍՍՀՄ-ի կազմավորման համար: 1922—1925 թթ. նա աշխատում է որպես Անդրկովկասյան դաշնակցային խորհրդի նախագահ, ՌԿ(բ)Կ Անդրերկըրկոմի առաջին քարտուղար: Ալ. Մյասնիկյանը նաև ՌԿ(բ)Կ Կենտկոմի անդամության թեկնածու էր, ՍՍՀՄ Կենտգործկոմի նախագահության ու ՍՍՀՄ Ռազմհեղխորհրդի անդամ:

Ալ. Մյասնիկյանը բազմազգ սովետական պետության կառուցողներից էր, լենինյան ազգային քաղաքականության հետևողական կիրառողը: Մեծ ինտերնացիոնալիստի վերջին ճառն էլ, որ նա արտասանեց մահից տասն օր առաջ՝ Ադրբեջանի Սովետների IV համագումարում, նվիրված էր ժողովուրդների բարեկամությանը: Ալ. Մյասնիկյանը շեշտում էր, որ աճում ու ամրապնդվում է ՍՍՀՄը և «աշխարհում ոչ ոք չի կարող խորտակել նրա հզորությունը», իսկ «...սովետական հանրապետությունների աշխատավորներն իրենց եղբայրական Միության միջոցով կհասնեն կոմունիզմին» (Ընտիր երկեր, էջ 474):

Իր ուժերի ծաղկման շրջանում՝ 1925 թ. մարտի 22-ին ինքնաթիռի աղետի հետևանքով կտրվում է Ալ. Մյասնիկյանի, ինչպես նաև Գ. Աթարբեկյանի ու Ս. Մոգիլևսկու պայծառ կյանքի թելը: Դա մեծագույն կորուստ էր կոմունիստական կուսակցության ու սովետական ժողովրդի համար:

Մյասնիկյանը խոր մտքի ու ամուր կամքի տեր լենինյան գործիչ էր, որն իր կոմունիստական նպատակասլացությամբ ու մարդկայնությամբ մշտապես աշխատավորներին ոգեշնչում էր նոր սխրանքների: Վերհիշելով նրա խոսքերը Ստ. Շահումյանի մասին, կարող ենք ասել, որ Ալ. Մյասնիկյանն իր հետ տարավ այն ամենը, ինչ հատուկ էր մահկանացուին, բայց նա թողեց սերունդներին հեղափոխականի սերը ժողովրդի նկատմամբ, իր վառ սիրտը, իր պարզ ու շիտակ միտքը, իր հրաշունչ ոգին: Նրա բազում ջանքերը մարմնավորված են մեր հաջողությունների ու հաղթանակների մեջ:

Ալ. Մյասնիկյանը թողել է գրական պատկառելի ժառանգություն. բացի բազմաքանակ զեկուցումներից, դասախոսություններից, ճառերից ու ելույթներից, նա խմբագրել է մամուլի օրգաններ, գրել է հատուկ հետազոտություններ, հրատարակել գրքեր ու հոդվածներ: Ալ. Մյասնիկյանը մարտնչող լենինյան էր, որը կուսակցության դիրքերից պայքար է մղել բուրժուական ու օպորտունիստական գաղափարախոսության, նացիոնալիզմի ու շովինիզմի դեմ: Նրա գրական-գիտական հարուստ ժառանգության ուսումնասիրությունն ունի ո՛չ միայն պատմաճանաչողական, այլև քաղաքական-դաստիարակչական կարևոր նշանակություն:

Ալ. Մյասնիկյանը քաղաքական-պետական խոշոր գործիչ էր, հայ ժողովրդի այն լավագույն զավակներից, որոնք, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի արտահայտությամբ, «...արժանավայել ավանդ ներդրեցին համառուսաստանյան հեղափոխական շարժման զարգացման, նոր տիպի մարքսիստական կուսակցության ստեղծման մեջ, մեր ամբողջ երկրի կոմունիստների հետ միասին ակտիվորեն մասնակցեցին հին աշխարհի վրա կատարվող գրոհին, նոր աշխարհի՝ սոցիալիստական աշխարհի կառուցմանը» (Լենինյան կուրսով, հ. 3, էջ 224):

Ալ. Մյասնիկյանը լենինյան գվարդիայի փայլուն աստղերից էր, որն այսօր էլ շողարձակում է:

**Մ. Վ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ**





Адрес редакции: 375033, Ереван 33. Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար, պրոպագանդայի բաժին և էկոնոմիկայի բաժին՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—0—64:

ՎՖ 05438 Պատվեր 480 Թղթի չափը 70×108 1/16: Տիրաժ 14.000 Գինը 20 կոպ.

Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 18/II-1976 թ.:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան: Ալ. Խանջյան փող. № 28:

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՀԵՌԱԳՐԻՉՆԵՐԻ ՀԱՄԱՐ

*Կալուգայի հեռուստամեխանիկական սարքերի գիտահետազոտական ինստիտուտը թողարկում է հայրենական առաջին էլեկտրոնային-մեխանիկական հեռագրիչ ապարատը, որը տեքստը տպագրում է ոչ թե ժապավենի, այլ գլանափաթեթային թղթի վրա: Այն նախատեսված է հեռագրային, հեռատիպային, ռադիո և այլատիպ հաղորդումների հաղորդման ու ընդունման համար: Ռուսական տպատառից լատինականին կամ թվային կոդին անցնելու համար բավական է սեղմել համապատասխան կոճակը: 13 նշան վայրկյանում՝ այսպիսին է հաղորդման արագությունը:*

*Տեքստը հաղորդելիս կամ ընդունելիս ապարատը միաժամանակ այն կոդավորում է ծակոտկեն ժապավենի վրա:*

## ԱՎՏՈՄԱՏ-ՄԵՔԵՆԱԳՐՈՒՀԻ

*«Օրգտեքստ»— այսպես է կոչվում համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի և չեխ մասնագետների աշխատակցությամբ ստեղծված ավտոմատ-մեքենագրուհին. ապարատը ծակոտկեն ժապավենի վրա ծածկագրում է բնագիրը, ապա գնդացրի արագությամբ, ավտոմատ կերպով բազմացնում այն՝ սրբագրելով ծրագրին համապատասխան: Վերամեքենագրելիս սխալը բացառվում է:*

## ԳՐՊԱՆԻ «ԷԼԵԿՏՐՈՆԻԿԱ»

*Էլեկտրոնային արդյունաբերության մինիստրության ձեռնարկություններում սկսել են թողարկել գրպանի էլեկտրոնային ստեղնավոր հաշվիչ՝ «էլեկտրոնիկա»: Այն նախատեսված է պլանա-տնտեսային, հաշվողա-վիճակագրական և ինժեներական հաշվարկների համար: Ինդիկատոր սարքը լյումինեսցենտային թվալամպերի վրա է:*

## ՈՐՊԵՍԶԻ ՉԽԱԽՏՎԻ ԻՈՆՆԵՐԻ ԲԱԼԱՆՍԸ

*Ռումինացի գիտնական Ե. Տ. Կովալիուն ստեղծել է դեղանյութ երիկամներում քար ունեցող հիվանդներին բուժելու համար և անվանել «Կովալիտ»: Քարագոյացման պատճառ մարդկային օրգանիզմում իոնների հիդրոէլեկտրոլիտիկ բալանսի խախտումն է: Նոր դեղանյութը վերականգնում է դրա հավասարակշռությունը:*

## ԹՈՒՆԱՎՈՐ ԳԱԶԵՐԸ ԿՊԱԿԱՍԵՆ

*Վերջերս ճապոնացի մասնագետները մշակել են նոր տեսակի արտանետիչ խողովակ, որտեղ որոշակի ջերմաստիճանում թունավոր շմոլ գազը վերածվում է նվազ թունավոր ածխաթթվային գազի:*

## ԳՈՒՅՆԵՐԻ ԴԵԴԵԿՏՈՐ

*Վարշավայի օպտիկական գործարանի աշխատող Է. Կուրչը հորինել է յուրատեսակ սարք, որի օգնությամբ կույրերը կարող են «տեսնել» գույները: Գույների այդ էլեկտրոնային դեդեկտորը լիցքավորվում է ոչ մեծ ակումուլյատորից, որը կրում են ինչպես ակնոց:*

*Դեդեկտորը հակազդում է ո՛չ միայն տեսանելի գույների, այլև ինֆրակարմիր և ուլտրամանուշակագույն ճառագայթների վրա:*